# ԱՎԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ



# ԱՎԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ

## Եվ Բանն Մարմին Եղավ

1 Սկզբում էր Բանը. և Բանն
Աստծո մոտ էր և Բանն Աստ-
ված էր:
2 Նա սկզբում Աստծո մոտ էր:
3 Ամեն ինչ Նրանով եղավ, և առանց
Նրա ոչինչ չեղավ, ինչ որ եղավ:
4 Նրանում էր կյանքը, և կյանքը
մարդկանց լույսն էր:
5 Եվ լույսը խավարի մեջ լուսավո-
րում է. և խավարը չճանաչեց այն:
6 Մի մարդ կար Աստծուց ուղարկ-
ված, որի անունը Հովհաննես էր:
7 Սա վկայության համար եկավ,
որպեսզի Լույսի մասին վկայություն
տա, որ բոլորը Նրանով հավատան:
8 Ինքը չէր այդ Լույսը, այլ ու-
ղարկված էր, որպեսզի այդ Լույսի
մասին վկայի:
9 Այն է ճշմարիտ լույսը, որ
լուսավորում է ամեն մարդու, որ
աշխարհ է գալիս:
10 Նա աշխարհի մեջ էր, և աշխար-
հը Նրանով եղավ, և աշխարհը
Նրան չճանաչեց:
11 Յուրայիններին եկավ, և յուրա-
յինները Նրան չընդունեցին:
12 Բայց ովքեր ընդունեցին Իրեն,
նրանց Նա Աստծո որդիներ
դառնալու զորություն տվեց, նրանց,
որ կհավատան Իր անվանը:
13 Որոնք ո՛չ արյունից, ո՛չ մարմնի
կամքից, և ո՛չ էլ մարդու կամքից
ծնվեցին, այլ՝ Աստծուց:
14 Եվ Բանը մարմին եղավ և մեր
մեջ բնակվեց, և մենք Նրա փառ
քը տեսանք, որպես Հոր Միածնի
փառքը՝ շնորհով ու ճշմարտու-
թյամբ լեցուն:
15 Հովհաննեսը Նրա մասին վկայեց
և աղաղակեց՝ ասելով. «Սա է, որի
մասին ես ասացի՝ «Նա, որ ինձա-
նից հետո է գալիս, գերադաս է ին-
ձանից, որովհետև Նա ինձանից
առաջ էր:
16 Եվ Նրա լիությունից մենք բոլորս
ստացանք շնորհ՝ շնորհի փոխարեն:
17 Որովհետև Օրենքը Մովսեսի ձեռ-
քով տրվեց, բայց շնորհը և ճշմար-
տությունը Հիսուս Քրիստոսով եկան:
18 Աստծուն երբե՛ք ոչ ոք չի տեսել,
մի՛միայն միածին Որդին, որ Հոր
ծոցում է, Նա լրիվ հայտնեց Նրան:

## Հովհաննես Մկրտչի Վկայությունը
(Մատթ 3:1-12, Մարկ 1:1-8
Ղուկ 3:1-18)

19 Եվ այս է Հովհաննեսի վկայու-
թյունը, երբ հրեաները Երուսաղե-
մից քահանաներ ու ղևտացիներ
ուղարկեցին նրա մոտ, որ հարցնեն
նրան, թե՝ «Դու ո՞վ ես».
20 նա չուրացավ, այլ խոստովանեց,
թե՝ «Ես Քրիստոսը չեմ»:
21 Եվ նրանք հարցրին նրան.
«Հապա ո՞վ, դու Եղիա՞ն ես»:
Եվ նա ասաց՝ «Չեմ»: «Դու այն
մարգարե՞ն ես»: Եվ նա պատաս-
խանեց՝ «Ո՛չ»:
22 Այն ժամանակ ասացին նրան.
«Հապա ո՞վ ես դու, ասա, որպես-
զի մենք էլ պատասխան տանք
նրանց, որ մեզ ուղարկեցին: Ի՞նչ
ես ասում քո մասին»:
23 Նա ասաց. «Ես նրա ձայնն
եմ, որ անապատում կանչում է՝
«Ուղղեցե՛ք Տիրոջ ճանապարհը»,
ինչպես Եսայի մարգարեն ասաց»:
24 Եվ ուղարկվածները փարիսեցի-
ներից էին:
25 Եվ նրան հարցրին ու ասացին.
«Հապա ինչու՞ ես մկրտում, եթե դու
Քրիստոսը չես, ո՛չ էլ Եղիան, և ո՛չ էլ
այն մարգարեն»:
26 Հովհաննեսը պատասխանեց
նրանց և ասաց. «Ես ջրով եմ
մկրտում, բայց ձեր մեջ մեկը կա,
ում դուք չեք ճանաչում:
27 Նա է ինձանից հետո եկողը, որ
գերադաս է ինձանից, որի կոշիկների
կապերը քանդելու ես արժանի չեմ»:
28 Այս բաները Բեթաբարայում
եղան՝ Հորդանանի այն կողմում,
ուր Հովհաննեսը մկրտում էր:

## Աստծո Գառը

29 Հաջորդ օրը Հովհաննեսը տեսավ
Հիսուսին, որ դեպի իրեն էր գալիս,
և ասաց. «Ահա Աստծո գառը, որ
վերցնում է աշխարհի մեղքը:
30 Սա Նա է, որի մասին ես ասում
էի, թե՝ ինձանից հետո մի մարդ է
գալիս, որը գերադաս է ինձանից,
որովհետև Նա ինձանից առաջ էր:
31 Եվ ես Նրան չգիտեի. սակայն,
որպեսզի Նա հայտնի լինի Իսրա-
յելին, դրա համար ես եկա ջրով
մկրտելու»:
32 Եվ Հովհաննեսը վկայեց, ասե-
լով՝ «Ես տեսա Հոգին որպես
աղավնի երկնքից իջնելիս, և Նրա
վրա մնաց:
33 Եվ ես չգիտեի Նրան, բայց Նա,
ով ինձ ուղարկեց ջրով մկրտելու,
Նա ինձ ասաց. «Ում վրա դու տես-
նես Սուրբ Հոգին կիջնի և կմնա,
Նա՛ է, որ մկրտում է Սուրբ Հոգով»:
34 Եվ ես տեսա և վկայեցի, թե՝ «Սա
է Աստծո Որդին»:

## Առաջին Աշակերտները

35 Հետևյալ օրը դարձյալ Հով-
հաննեսը կանգնած էր, նաև՝ իր
աշակերտներից երկուսը:

36 Եվ Հիսուսին նայելով, որ քայլում
էր, ասաց. «Ահա՜ Աստծո Գառը»:
37 Այն երկու աշակերտները լսեցին
նրա խոսքերը, և գնացին Հիսուսի
ետևից:
38 Երբ Հիսուսը ետ դարձավ և
տեսավ նրանց՝ Իրեն հետևելիս,
ասաց նրանց. «Ի՞նչ եք ուզում»:
Նրանք ասացին Նրան. «Ռաբբի
(որ թարգմանվում է վարդապետ),
որտե՞ղ ես մնում»:
39 Նա ասաց նրանց. «Եկե՛ք և
տեսե՛ք»: Եկան ու տեսան, թե
որտեղ էր մնում, և այդ օրը Նրա
մոտ մնացին, որովհետև մոտ
տասներորդ ժամն էր:
40 Անդրեասը՝ Սիմոն Պետրոսի
եղբայրը, այդ երկուսից մեկն էր,
որոնք Հովհաննեսի խոսքերը
լսեցին ու Նրան հետևեցին:
41 Նա նախ իր եղբորը՝ Սիմոնին,
գտավ ու նրան ասաց. «Մենք
Մեսիային գտանք» (որ թարգման-
վում է Քրիստոս):
42 Եվ բերեց նրան Հիսուսի մոտ: Եվ
երբ Հիսուսը տեսավ նրան, ասաց.
«Դու Սիմոնն ես՝ Հովնանի որդին.
դու պիտի կոչվես Կեփաս» (որ
թարգմանվում է Պետրոս):

## Հիսուսը Կանչում Է Փիլիպպոսին Եվ Նաթանայելին

43 Հետևյալ օրը Հիսուսը Գալիլիա
պիտի գնար. և գտնում է Փիլիպպո-
սին ու ասում նրան. «Ի՛նձ հետևիր»:
44 Փիլիպպոսը Բեթսայիդայից էր,
Անդրեասի և Պետրոսի քաղաքից:
45 Փիլիպպոսն էլ գտնում է Նա-
թանայելին և ասում նրան. «Նա,
որի մասին Մովսեսը Օրենքում
գրեց, և մարգարեներն էլ, մենք
Նրան գտանք՝ Հիսուսին, Հովսեփի
որդուն՝ Նազարեթից»:
46 Եվ Նաթանայելը նրան ասաց.
«Մի՞թե հնարավոր է, որ Նազա-
րեթից մի լավ բան դուրս գա»:
Փիլիպպոսը նրան ասաց. «Ե՛կ
և տես»:
47 Հիսուսը տեսավ Նաթանայելին
Իր մոտ գալիս և նրա մասին ասաց.
«Ահա մի ճշմարիտ իսրայելացի,
որի մեջ նենգություն չկա»:
48 Նաթանայելն ասաց նրան. «Որ-
տեղի՞ց ես Դու ինձ ճանաչում»: Հի-
սուսը պատասխանեց և ասաց նրան.
«Փիլիպպոսը դեռ քեզ չկանչած, երբ
թզենու տակ էիր, Ես քեզ տեսա»:
49 Նաթանայելը պատասխանեց
և ասաց Նրան. «Ռաբբի՛, Դու ես
Աստծո Որդին, Դու ես Իսրայելի
թագավորը»:
50 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրան. «Որովհետև Ես քեզ ասացի,
թե թզենու տակ տեսա քեզ, հավա-
տու՞մ ես. սրանցից շատ ավելի մեծ
բաներ պիտի տեսնես»:
51 Եվ Նա ասաց նրան. «Ճշմարիտ,
ճշմարիտ եմ ասում ձեզ, այսուհետև
պիտի տեսնեք երկինքը բացված,
և Աստծո հրեշտակներին Մարդու
Որդու վրա ելնելիս ու իջնելիս»:

## Առաջին Հրաշքը

2 Եվ երրորդ օրը հարսա-
նիք կար Գալիլիայի Կանա
քաղաքում և Հիսուսի մայրն
այնտեղ էր:
2 Հիսուսն էլ հրավիրվեց այդ հար-
սանիքին, և Իր աշակերտներն էլ:
3Եվ երբ գինին պակասեց, Հիսուսի
մայրն ասաց Նրան. «Սրանք գինի
չունեն»:
4 Հիսուսն ասաց նրան. «Կի՛ն, ի՞նչ
ունեմ Ես քեզ հետ, Իմ ժամը դեռ չի
հասել»:
5 Նրա մայրն ասաց սպասավորնե-
րին. «Ինչ որ ձեզ ասի, արեք»:
6 Այնտեղ, հրեաների մաքրվելու
սովորության համաձայն, քարե
վեց ջրի կարասներ կային, յուրա-
քանչյուրը երկու կամ երեք մարի
տարողությամբ:
7 Հիսուսը նրանց ասաց. «Այդ
կարասները ջրով լցրեք»: Եվ
դրանք բերնեբերան ջրով լցրին:
8 Եվ նրանց ասաց. «Հիմա վերց-
րե՛ք և տարեք սեղանապետին», և
նրանք տարան:
9 Սեղանապետը, երբ գինի դար
ձած ջրի համը առավ, ու ինքը
չգիտեր դրա որտեղից լինելը (բայց
սպասավորները, որոնք ջուրը լցրել
էին, գիտեին), փեսային կանչեց
10 և նրան ասաց. «Ամեն մարդ
նախ լավ գինին է մատուցում, ու
երբ բավական հարբած են, այն
ժամանակ՝ ավելի վատը, իսկ դու
լավ գինին մինչև հիմա պահել ես»:
11 Սա հրաշքների սկիզբն էր, որ
Հիսուսն արեց Գալիլիայի Կա-
նայում և Իր փառքն հայտնեց,
և Իր աշակերտները հավատացին
Նրան:
12 Սրանից հետո Հիսուսն իջավ
Կափառնայում՝ Ինքը և Իր
մայրը, և Իր եղբայրները, և Իր
աշակերտները. բայց շատ օրեր
չմնացին այնտեղ:

## Հիսուսը Տաճար Է Գնում

(Մատթ 21:12-13,
Մարկ 11:15-17, Ղուկ 19:45-46)

13 Եվ հրեաների Զատիկը մոտ էր, և
Հիսուսը ելավ Երուսաղեմ:
14 Տաճարի մեջ գտավ արջառ ու
ոչխար և աղավնի ծախողներ և լու-
մայափոխներ, որոնք նստած էին:
15 Եվ պարանից խարազան շինեց
և բոլորին տաճարից դուրս քշեց,
ոչխարներն ու եզներն էլ, իսկ լու-
մայափոխների պղնձադրամները
թափեց և սեղանները շուռ տվեց:
16 Եվ աղավնի ծախողներին ասաց.
«Վերցրե՛ք դրանք այստեղից. Իմ
Հոր տունը առևտրի տուն մի՛ շինեք»:
17 Եվ Նրա աշակերտները հիշեցին,
որ գրված է. «Քո տան նախանձը
կերավ Ինձ»:
18 Ապա հրեաները պատասխան
տվեցին և ասացին Նրան. «Դու
մեզ ի՞նչ նշան ես ցույց տալիս՝ այս

բաները անելու համար»:
19 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրանց. «Քանդեցե՛ք այդ տաճարը և
երեք օրում Ես կկանգնեցնեմ այն»:
20 Հրեաներն էլ ասացին. «Այս
տաճարը քառասունվեց տարում
շինվեց, և Դու երեք օրում պիտի
վերականգնե՞ս այն»:
21 Սակայն Նա Իր մարմնի
տաճարի մասին էր ասում:
22 Իսկ երբ Նա մեռելներից հարու-
թյուն առավ, Նրա աշակերտները
հիշեցին, թե Նա իրենց ասաց սա.
և հավատացին Գրքին և այն խոս-
քին, որ Հիսուսն ասել էր:
23 Եվ երբ Նա Երուսաղեմում
էր Զատկին՝ տոնի օրը, շատերը
հավատացին Նրա անվանը,
երբ տեսան Նրա կատարած
հրաշքները:
24 Բայց Հիսուսն Ինքը Իր անձը չէր
վստահում նրանց, որովհետև Ինքն
ամեն մարդու գիտեր,
25 և կարիք չուներ, որ որևէ մեկը
վկայեր մարդու մասին, որովհետև
Ինքը գիտեր, թե ինչ կա մարդու
ներսում:

## Նիկոդեմոս

3 Փարիսեցիների մեջ մի մարդ
կար՝ Նիկոդեմոս անունով,
հրեաների իշխանավոր:
2 Սա գիշերով Հիսուսի մոտ եկավ
և ասաց Նրան. «Ռաբբի՛, գիտենք,
որ Աստծուց վարդապետ ես եկել,
որովհետև ոչ ոք չի կարող անել այն
հրաշքները, որ Դու ես անում, եթե
Աստված նրա հետ չլինի»:
3 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրան. «Ճշմարիտ, ճշմարիտ եմ
ասում քեզ, եթե մեկը վերստին
չծնվի, չի կարող Աստծո արքայու-
թյունը տեսնել»:
4 Նիկոդեմոսը Նրան ասաց. «Մարդ
ինչպե՞ս կարող է ծնվել, երբ ծեր է.
մի՞թե կարող է երկրորդ անգամ իր
մոր արգանդը մտնել և ծնվել»:
5 Հիսուսը պատասխանեց. «Ճշմա-
րիտ, ճշմարիտ եմ ասում քեզ. եթե
մեկը ջրից և Հոգուց չծնվի, նա չի
կարող Աստծո թագավորությունը
մտնել:
6 Մարմնից ծնվածը մարմին է. և
Հոգուց ծնվածը հոգի է:
7 Մի՛ զարմանա, որ Ես քեզ ասացի,
թե՝ դուք պետք է վերստին ծնվեք:
8 Քամին որտեղ ուզում է՝ փչում է,
և դու նրա ձայնը լսում ես, բայց չես
կարող ասել, թե որտեղի՞ց է այն
գալիս կամ ու՞ր է գնում. այսպես է
ամեն մեկը, որ Հոգուց է ծնված»:
9 Նիկոդեմոսը պատասխանեց և
ասաց Նրան. «Այդ ինչպե՞ս կարող
է լինել»:
10 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրան. «Դու Իսրայելի վարդապետ
ես և այս բաները չգիտե՞ս:
11 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
քեզ, թե ինչ որ գիտենք՝ խոսում ենք,
և ինչ որ տեսանք՝ վկայում ենք. և

մեր վկայությունը չեք ընդունում:
12 Եթե Ես երկրավոր բաներն
ասացի ձեզ, և դուք չեք հավատում,
ինչպե՞ս պիտի հավատաք, եթե ձեզ
երկնային բաների մասին ասեմ:
13 Ո՛չ մի մարդ երկինք չի բարձ-
րացել, բացի Նրանից, որ երկնքից
ցած իջավ, հենց՝ Մարդու Որդին,
որ երկնքում է:
14 Եվ ինչպես Մովսեսն անապատի
մեջ օձը բարձրացրեց, այդպե՛ս էլ
պետք է Մարդու Որդին բարձրացվի,
15 որպեսզի ո՛վ որ Նրան հա-
վատա, չկորչի, այլ հավիտենական
կյանք ունենա:
16 Որովհետև Աստված այնպես
սիրեց աշխարհը, որ Իր միածին
Որդուն տվեց, որ ով Նրան հա-
վատա չկորչի, այլ հավիտենական
կյանք ունենա:
17 Որովհետև Աստված Իր Որդուն
չուղարկեց աշխարհ, որ աշխարհը
դատի, այլ որ աշխարհը Նրանով
փրկվի:
18 Նա, ո՛վ հավատում է Նրան,
պիտի չդատապարտվի, և ով
Նրան չի հավատում, արդեն
դատապարտված է, որովհետև
չհավատաց Աստծո միածին
Որդու անվանը:
19 Եվ սա է դատաստանը, որ
լույսն աշխարհ եկավ, և մարդիկ
խավարը լույսից ավելի սիրեցին,
որովհետև իրենց գործերը չար էին:
20 Քանի որ ամեն մեկը, որ չար է
գործում, ատում է լույսը, և լույսի
մոտ չի գալիս, որպեսզի իր արարք-
ները չհանդիմանվեն:
21 Իսկ ով ճշմարտությունն է անում՝
լույսին է գալիս, որպեսզի իր
արարքները հայտնվեն, թե դրանք
Աստծով են կատարվում»:

## Հիսուսը Մեծ
## Է Հովհաննեսից

22 Այս բաներից հետո Հիսուսն Իր
աշակերտների հետ Հրեաստա-
նի երկիրը եկավ և այնտեղ նրանց
հետ մնում և մկրտում էր:
23 Եվ Հովհաննեսն էլ Այենոնումն
էր մկրտում՝ Սաղեմի մոտ, որով-
հետև այնտեղ շատ ջուր կար. և
նրանք գալիս և մկրտվում էին:
24 Քանի որ Հովհաննեսը դեռ բանտ
չէր նետված:
25 Արդ՝ Հովհաննեսի աշակերտ-
ներից ոմանց և հրեաների միջև
մաքրումի մասին մի հարց ծագեց:
26 Եվ Հովհաննեսի մոտ եկան և
ասացին նրան. «Ռաբբի՛, Նա, որ
Հորդանանի այն կողմումն էր քեզ
հետ, որի համար դու վկայեցիր,
ահա՛ մկրտում է, և ամենքը Նրա
մոտ են գալիս»:
27 Հովհաննեսը պատասխանեց և
ասաց. «Մարդ ոչինչ ստանալ չի
կարող, եթե դա երկնքից տրված չլի-
նի նրան»:
28 Դուք ինքներդ վկայում եք ինձ
համար, որ ասացի ձեզ, թե ես

Քրիստոսը չեմ, այլ ես Նրա առջևից
եմ ուղարկված:
29 Փեսան նա է, որ հարսն ունի:
Փեսայի բարեկամը, որը կանգ-
նում է և լսում է նրան, մեծապես
ուրախանում է փեսայի ձայնով. այս
իմ ուրախությունը ուստի կատար-
յալ է:
30 Նա պետք է մեծանա, բայց ես
պետք է փոքրանամ:

## Նա, Որ Երկնքից Է Գալիս

31 Նա, որ վերից է գալիս, ամենից
վեր է. նա, որ երկրից է, երկրավոր է
և երկրից է խոսում: Նա, որ երկնքից
է գալիս, ամենից վեր է:
32 Եվ ինչ որ տեսավ ու լսեց, դա է
վկայում, սակայն Նրա վկայությու-
նը ոչ մի մարդ չի ընդունում:
33 Իսկ ով ընդունում է Նրա վկայու-
թյունը, իր կնիքն է դնում, թե՝ Աստ-
ված ճշմարիտ է:
34 Որովհետև Նա, ում Աստված
ուղարկեց, Աստծո խոսքերն է
խոսում. քանի որ Աստված Նրան
չափով չի տալիս Հոգին:
35 Հայրը սիրում է Որդուն և ամեն
բան Նրա ձեռքն է տվել:
36 Ով հավատում է Որդուն, հավի-
տենական կյանքն ունի, իսկ ով չի
հավատում Որդուն, նա կյանքը
չպիտի տեսնի, այլ Աստծո բարկու-
թյունը մնում է նրա վրա»:

## Սամարացի Կինը

4 Եվ երբ Տերն իմացավ, թե
փարիսեցիները լսել են, թե Հի-
սուսն ավելի շատ աշակերտներ
ունի և մկրտել է, քան Հովհաննեսը
2 (թեպետ Հիսուսն Ինքը չէր մկր-
տում, այլ՝ Նրա աշակերտները),
3 Հրեաստանի երկիրը թողեց և
կրկին Գալիլիա եկավ:
4 Եվ Նա պետք է Սամարիայով
անցներ:
5 Ապա Նա Սամարիայի մի քա-
ղաքն եկավ, որի անունը Սյուքար
էր, այն տեղին մոտ, որ Հակոբն իր
որդի Հովսեփին տվեց:
6 Արդ, Հակոբի ջրհորն այնտեղ էր:
Հիսուսը ճանապարհից հոգնած,
այդ ջրհորի եզրին նստեց. և մոտ
վեցերորդ ժամն էր:
7 Սամարիայից մի կին եկավ ջուր
հանելու. Հիսուսը նրան ասաց.
«Ինձ ջուր տուր, խմեմ»
8 (քանի որ Իր աշակերտները քա-
ղաք էին գնացել, որ ուտելիք գնեն):
9 Սամարացի կինն էլ ասաց
Նրան. «Դու, որ հրեա ես, ինչպե՞ս
ես ինձանից՝ մի սամարացի կնո-
ջից, խմելու ջուր ուզում. քանի որ
հրեաները սամարացիների հետ
չեն շփվում»:
10 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրան. «Եթե իմանայիր Աստծո
պարգևը, և թե ո՞վ է Նա, որ քեզ
ասում է՝ «Ինձ ջուր տուր խմելու»,
դու ինքդ Նրանից կուզեիր, և Նա

քեզ կենդանի ջուր կտար»:
11 Կինը Նրան ասաց. «Տե՛ր, Դու
ջուր քաշելու համար ոչ մի բան չու-
նես, և այս հորը խորն է, որտեղի՞ց
ունես այդ կենդանի ջուրը:
12 Մի՞թե Դու ավելի մեծ ես, քան
մեր հայր Հակոբը, որ այս հորը
տվեց մեզ. և սրանից խմեցին ինքը
և իր որդիները և իր հոտերը»:
13 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրան. «Ով այս ջրից խմի, նորից
կծարավի, բայց ով խմի այն ջրից,
որ Ես նրան պիտի տամ, երբե՛ք
չպիտի ծարավի:
14 Այլ այն ջուրը, որ Ե՛ս եմ տա-
լու նրան, նրա մեջ ջրի աղբյուր
կլինի՝ հավիտենական կյանքի
համար բխող»:
15 Կինը Նրան ասաց. «Տե՛ր, տու՛ր
ինձ այդ ջուրը, որ ես չծարավեմ, ոչ
էլ այստեղ գամ ջուր հանելու»:
16 Հիսուսը նրան ասաց. «Գնա՛, քո
ամուսնուն կանչի՛ր և այստեղ արի»:
17 Կինը պատասխանեց և ասաց.
«Ես ամուսին չունեմ». Հիսուսը
նրան ասաց. «Լավ ասացիր, թե
ամուսին չունեմ.
18 քանի որ դու հինգ մարդ ես
ունեցել, և նա, որ հիմա ունես,
քո ամուսինը չէ. դա ճշմարիտ
ասացիր»:
19 Կինը նրան ասաց, «Տե՛ր, տես-
նում եմ, որ Դու մարգարե ես:
20 Մեր հայրերը այս լեռան վրա
երկրպագություն արեցին, իսկ դուք
ասում եք, թե Երուսաղե՛մն է այն
տեղը, ուր պետք է երկրպագություն
անել»:
21Հիսուսը նրան ասաց. «Կին, հա-
վատա՛ Ինձ, որ ժամանակը գալիս
է, երբ դուք ո՛չ այս լեռան վրա, և ո՛չ էլ
Երուսաղեմում պիտի պաշտեք Հորը:
22 Դուք չգիտեք, թե ինչ եք
պաշտում, մենք գիտենք, թե ինչ
ենք պաշտում, որովհետև փրկու-
թյունը հրեաներից է:
23 Բայց ժամանակը գալիս է, և
հիմա է՛, երբ ճշմարիտ երկրպա-
գողները հոգով և ճշմարտությամբ
պիտի պաշտեն Հորը, որովհետև
Հայրը այսպիսիներին է փնտրում՝
Իրեն պաշտելու:
24 Աստված Հոգի է, և Նրան
պաշտողները պետք է հոգով և
ճշմարտությամբ պաշտեն»:
25 Կինն ասաց նրան. «Գիտեմ, որ
Մեսիան պիտի գա (որ Քրիստոս
է կոչվում). երբ Նա գա, ամեն բան
կասի մեզ»:
26 Հիսուսը նրան ասաց. «Ես, որ
քեզ հետ խոսում եմ, Նա եմ»:
27 Եվ սրա վրա Նրա աշակերտնե-
րը եկան և զարմանում էին, որ կնոջ
հետ խոսում էր, բայց ոչ ոք չասաց.
«Ի՞նչ ես ուզում, կամ ինչու՞ ես
խոսում նրա հետ»:
28 Կինն էլ իր կուժը թողեց և գնաց
քաղաք և մարդկանց ասաց.
29 «Եկե՛ք տեսեք մի մարդ, որ ինձ
ասաց ամեն բան, որ ես արել եմ:
Արդյոք սա Քրիստոսը չի՞»:
30 Եվ նրանք քաղաքից ելան և

Նրա մոտ եկան:
31 Մինչ այդ, Նրա աշակերտները
խնդրում էին Նրան ու ասում.
«Ռաբբի՛, կե՛ր»:
32 Նա էլ ասաց նրանց. «Ես կերա-
կուր ունեմ ուտելու, որ դուք չգիտեք»:
33 Աշակերտներն էլ իրար ասում
էին. «Արդյոք ինչ-որ մեկը Նրան
ուտելու բա՞ն բերեց»:
34 Հիսուսն ասաց նրանց. «Իմ
կերակուրն այն է, որ Ես Ինձ
ուղարկողի կամքն անեմ և Նրա
գործը կատարեմ:
35 Մի՞թե դուք չեք ասում, թե դեռ
չորս ամիս կա, որ հունձը գա. ահա
Ես ձեզ ասում եմ. բարձրացրե՛ք
ձեր աչքերը և դաշտերին նայեցեք,
որովհետև դրանք սպիտակել են ու
պատրաստ են հնձի համար:
36 Եվ հնձողը վարձ է ստանում և հա-
վիտենական կյանքի համար պտուղ
հավաքում, որպեսզի և՛ սերմանողը,
և՛ հնձողը միասին ուրախանան:
37 Եվ այստեղ ճշմարիտ է այն
խոսքը, թե՝ մեկը սերմանում է, և
ուրիշը՝ հնձում:
38 Ես ձեզ ուղարկեցի հնձելու այն,
որի համար դուք ջանք չեք թափել.
ուրիշներն աշխատեցին, և դուք
նրանց աշխատանքի մեջ մտաք»:
39 Եվ այն քաղաքից շատ սամա-
րացիներ հավատացին Նրան,
այն կնոջ խոսքի պատճառով, որ
վկայեց, թե՝ «Նա ինձ ասաց ամեն
բան, որ ես երբևէ արել եմ»:
40 Ուստի երբ սամարացիները Նրա
մոտ եկան, Նրան աղաչեցին, որ
իրենց մոտ մնա. և երկու օր մնաց
այնտեղ:
41 Եվ շատերը Նրան հավատացին
Իր խոսքերի համար:
42 Եվ կնոջն ասացին. «Հիմա
մենք հավատում ենք, ոչ թե քո
ասածների պատճառով, այլ
որովհետև մենք ինքներս լսեցինք,
և գիտենք, որ իրոք սա է Քրիստոսը՝
աշխարհի Փրկիչը»:

## Հիսուսը Բուժում Է Ազնվականի Որդուն

43 Եվ երկու օրից հետո այնտեղից
ելավ ու Գալիլիա գնաց:
44 Քանի որ Հիսուսն Ինքը վկայեց,
թե մարգարեն իր գավառում պա-
տիվ չունի:
45 Բայց երբ Գալիլիա եկավ, գալի-
լիացիներն ընդունեցին Նրան,
քանի որ տեսել էին այն բոլոր
հրաշքները, որ Նա արեց տոնի ժա-
մանակ՝ Երուսաղեմում, որովհետև
իրենք էլ էին գնացել այդ տոնին:
46 Եվ Հիսուսը դարձյալ եկավ
Գալիլիայի Կանան, որտեղ ջու-
րը գինի էր դարձրել: Այնտեղ մի
ազնվական մարդ կար, որի որդին
Կափառնայումի մեջ հիվանդ էր:
47 Նա լսելով, թե Հիսուսը Հրեաս-
տանից եկել է Գալիլիա, եկավ նրա
մոտ և աղաչում էր, որ իջնի և իր որ-
դուն բժշկի, քանի որ մահամերձ էր:

48 Հիսուսն էլ նրան ասաց. «Եթե
նշաններ և հրաշքներ չտեսնեք,
դուք չեք հավատա»:
49 Ազնվականը Նրան ասաց. «Տե՛ր,
արի՛, քանի դեռ տղաս չի մեռել»:
50 Հիսուսը նրան ասաց. «Գնա՛, քո
որդին կենդանի է», և մարդը հա-
վատաց այն խոսքին, որ Հիսուսը
նրան ասաց, և իր ճամփան գնաց:
51 Եվ մինչ նա իջնում էր, նրա ծա-
ռաները նրան դիմավորեցին և
ավետիս տվեցին ասելով՝ «Տղադ
ողջ է»:
52 Ապա նա հարցաքննեց նրանց,
թե ո՞ր ժամին է սկսել ապաքինվել:
Եվ ասացին նրան. «Երեկ, յոթնե-
րորդ ժամին տենդը թողեց նրան»:
53 Այն ժամանակ հայրն իմացավ,
թե այդ նույն ժամին էր, որ Հիսուսն
իրեն ասաց. «Քո որդին ապրում
է». և՛ ինքը հավատաց, և՛ իր
ամբողջ տունը:
54 Սա դարձյալ երկրորդ հրաշքն
էր, որ Հիսուսն արեց, երբ Հրեաս-
տանից Գալիլիա եկավ:

## Ոչխարների Ավազանի Անդամալույծի Բժշկումը

5 Սրանից հետո հրեաների տոնն
էր, և Հիսուսը Երուսաղեմ ելավ:
2 Եվ Երուսաղեմում՝ Ոչխար-
ների շուկայի մոտ մի ավազան
կար, որ եբրայերեն Բեթհեզդա էր
կոչվում, որ հինգ սրահ ուներ:
3 Դրանց մեջ անկարող մարդկանց
մեծ բազմություն կար պառկած՝
կույրեր, կաղեր, գոսացածներ, որ
ջրի շարժվելուն էին սպասում,
4 որովհետև մի հրեշտակ ժա-
մանակ առ ժամանակ իջնում էր
ավազանի մեջ և ջրերը խառնում.
ջրերի շարժումից հետո ով առա-
ջինը մեջը մտներ, բուժվում էր այն
ախտից, որից տառապում էր:
5 Եվ այնտեղ մի մարդ կար, որ
երեսունութ տարուց ի վեր տկարու-
թյուն ուներ:
6 Հիսուսը, երբ տեսավ նրան, որ
ընկած պառկած էր, իմացավ, որ
երկար ժամանակ է, ինչ այդ վիճա-
կում է, ասաց նրան. «Կամենու՞մ ես
առողջ լինել»:
7 Հիվանդ մարդը պատասխանեց
Նրան. «Տե՛ր, ոչ մեկը չունեմ, որ երբ
ջրերը խառնվում են, ինձ ավազանի
մեջ իջեցնի, և մինչև ես գամ, մի ու-
րիշն ինձանից առաջ իջնում է մեջը»:
8 Հիսուսը նրան ասաց. «Վե՛ր կաց,
անկողինդ վերցրո՛ւ և քայլի՛ր»:
9 Եվ մարդն իսկույն առողջացավ,
իր անկողինը վերցրեց և քայլեց. և
այն օրը շաբաթ էր:
10 Ուստի հրեաները բժշկված
մարդուն ասացին. «Սա շաբաթ
օր է, օրինավոր չէ, որ դու քո
անկողինը վերցնես»:
11 Նա պատասխանեց նրանց.
«Նա, որ ինձ բժշկեց, Նա՛ ասաց
ինձ՝ անկողինդ վերցրու և քայլիր»:
12 Արդ, հարցրին նրան և ասացին.

«Ո՞վ է այն մարդը, որ քեզ ասաց՝
անկողինդ վերցրու և քայլիր»:
13 Բայց բժշկվածը չգիտեր, թե ով է
նա, որովհետև Հիսուսը, այնտեղի
ամբոխից խույս տալով, հեռացել էր:
14 Սրանից հետո Հիսուսը նրան
գտավ տաճարում և ասաց.
«Ահա՛ բժշկվեցիր, այլևս մեղք մի՛
գործիր, որ էլ ավելի վատ բան
չպատահի քեզ»:
15 Մարդը գնաց և հրեաներին ասաց,
թե Հիսուսն է, որ իրեն բժշկեց:
16 Դրա համար հրեաները Հիսուսին
հալածում էին և ուզում էին Նրան
սպանել, որովհետև այս բաները
շաբաթ օրն էր անում:
17 Եվ Հիսուսը պատասխանեց
նրանց. «Իմ Հայրը մինչև հիմա
գործում է. Ես էլ եմ գործում»:
18 Այդ պատճառով հրեաներն
առավել ևս ուզում էին Նրան սպա-
նել, որովհետև ոչ միայն շաբաթն էր
կոտրում, այլև Աստծուն Իր Հայրն
էր անվանում՝ Ինքն Իրեն Աստծուն
հավասար անելով:

## Հայրը Եվ Որդին

19 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրանց. «Ճշմարիտ, ճշմարիտ եմ
ասում ձեզ՝ Որդին Ինքն Իրենից
ոչինչ չի կարող անել, այլ ինչ տես-
նում է Հորն անելիս, որովհետև,
ինչ բաներ, որ Նա է անում, այդ էլ
Որդին է անում նույն ձևով:
20 Որովհետև Հայրը սիրում է Որ-
դուն և ամեն բան, ինչ Ինքն անում
է, ցույց է տալիս Նրան, և սրանցից
էլ ավելի մեծ գործեր է ցույց տալու
Նրան, որ դուք զարմանաք:
21 Որովհետև ինչպես Հայրը
մեռելներին հարուցանում է ու
կենդանացնում, այնպես էլ Որդին
կենդանացնում է՝ ում Ինքը
կամենա:
22 Որովհետև Հայրը ոչ մի մարդու
չի դատում, այլ ամեն դատաստան
Որդուն տվեց,
23 որ բոլոր մարդիկ պատվեն Որ-
դուն, ինչպես Հորն են պատվում:
Նա, որ Որդուն չի պատվում, Նրան
ուղարկող Հորը չի պատվում:
24 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ, ով լսում է Իմ խոսքը և
հավատում Նրան, որ Ինձ ուղար-
կեց, հավիտենական կյանք ունի
և դատապարտության պիտի չգա,
այլ մահից կյանքի է անցել:
25 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ, թե ժամանակը գալիս է, և
հիմա՛ է, որ մեռելներն Աստծո Որ-
դու ձայնը պիտի լսեն, և նրանք որ
կլսեն, պիտի ապրեն:
26 Որովհետև ինչպես Հայրն Ինքն
Իր մեջ կյանք ունի, այնպես էլ
Որդուն տվեց, որ Ինքն Իր մեջ
կյանք ունենա:
27 Եվ Նրան նույնպես դատաստան
անելու իշխանություն տվեց, որով-
հետև Նա Մարդու Որդի է:
28 Սրա վրա մի զարմանաք, որով-

հետև ժամը գալիս է, երբ բոլորը, որ
գերեզմաններում են, Նրա ձայնը
պիտի լսեն:
29 Եվ դուրս պիտի գան. նրանք, որ
բարի են գործել՝ կյանքի հարու-
թյանը, և նրանք որ չար են գործել՝
դատապարտության հարությանը:

## Վկայություն Հիսուսի Մասին

30 Ես Ինքս Ինձանից ոչինչ չեմ
կարող անել. ինչպես լսում եմ՝
դատում եմ, և Իմ դատաստանը
արդար է, որովհետև Ես Իմ կամքը
չեմ փնտրում, այլ՝ Հոր կամքը, որն
Ինձ ուղարկեց:
31 Եթե Ես Ինձ համար վկայեմ, Իմ
վկայությունը ճշմարիտ չէ:
32 Ուրիշ մեկը կա, որ վկայում է Ինձ
համար, և Ես գիտեմ, թե ճշմարիտ
է այն վկայությունը, որ նա տալիս է
Իմ մասին:
33 Դուք Հովհաննեսի մոտ ուղար-
կեցիք, և նա ճշմարտության մասին
վկայություն տվեց:
34 Բայց Ես մարդուց վկայություն
չեմ ստանում, այլ այս բաները
ասում եմ, որ դուք փրկվեք:
35 Նա մի վառվող ու փայլող ճրագ
էր, և դուք հոժար էիք որոշ ժամա-
նակ նրա լույսով ուրախանալ:
36 Բայց Ես ավելի մեծ վկայություն
ունեմ, քան Հովհաննեսինը, այսինքն՝
այն գործերը, որ Հայրն Ինձ տվեց,
որ կատարեմ, նույն այդ գործերը, որ
Ես անում եմ, Իմ մասին վկայում են,
թե Հայրն ուղարկեց Ինձ:
37 Եվ Ինձ ուղարկող Հայրն Ինքը
Իմ մասին վկայեց. դուք ոչ մի ժա-
մանակ ո՛չ Նրա ձայնը լսեցիք, ո՛չ
Նրա կերպարանքը տեսաք,
38 և ո՛չ էլ Նրա Խոսքը բնակվում է
ձեզանում, որովհետև Նրան, Ում
Նա ուղարկեց, դուք չեք հավատում:
39 Քննեցե՛ք Գրքերը, քանի որ կար-
ծում եք, թե դրանցով հավիտենա-
կան կյանք ունեք, և դրանք են, որ
Իմ մասին վկայում են:
40 Եվ դուք Ինձ չեք գալիս, որ
կյանք ունենաք:
41 Ես մարդկանցից փառք չեմ
ստանում:
42 Սակայն Ես գիտեմ ձեզ, որ Աստ
ծո սերը չունեք ձեր մեջ:
43 Ես Իմ Հոր անունով եկա, և Ինձ
չեք ընդունում, եթե ուրիշը գա իր
անունով, նրան պիտի ընդունեք:
44 Ի՞նչպես կարող եք դուք հավա-
տալ, որ իրարից փառք ստանում
եք, բայց չեք փնտրում այն փառքը,
որ միայն Աստծուց է գալիս:
45 Մի կարծեք, թե Ես ձեզ պիտի
մեղադրեմ Հոր մոտ. մեկը կա, որ
մեղադրում է ձեզ, Մովսեսն ինքը,
ում վրա դուք ձեր հույսն եք դրել:
46 Քանի որ, եթե դուք Մովսեսին
հավատայիք, Ինձ էլ կհավատա-
յիք, որովհետև նա Իմ մասին գրեց:
47 Բայց եթե նրա գրածներին
չեք հավատում, Իմ խոսքերին
ինչպե՞ս պիտի հավատաք»:

## Հացի Բազմացումը
(Մատթ 14:13-21, Մարկ 6:30-44, Ղուկ 9:10-17)

6 Սրանից հետո Հիսուսը Գալի-
լիայի Տիբերիա ծովի մյուս
կողմը գնաց:
2 Եվ մեծ բազմություն Նրա ետևից
էր գնում, որովհետև նրանք տեսան
այն հրաշքները, որ Նա անում էր
հիվանդների վրա:
3 Եվ Հիսուսը լեռը բարձրացավ ու
այնտեղ նստեց Իր աշակերտների
հետ:
4 Եվ հրեաների Զատկի տոնը
մոտ էր:
5 Հիսուսը, երբ աչքերը վեր
բարձրացրեց և տեսավ, որ մեծ
բազմություն է գալիս Իր մոտ,
ասաց Փիլիպպոսին. «Որտեղի՞ց
հաց գնենք, որ սրանք ուտեն»:
6 Բայց այս ասաց՝ նրան փորձելու
համար, քանի որ Ինքը գիտեր, թե
ինչ պիտի անի:
7 Փիլիպպոսը պատասխանեց
Նրան. «Երկու հարյուր դահեկանի
հաց բավական չի դրանց, որ նրան-
ցից ամեն մեկը մի քիչ առնի»:
8 Նրա աշակերտներից մեկը՝
Անդրեասը, Սիմոն Պետրոսի
եղբայրը, ասաց Նրան.
9 «Այստեղ մի տղա կա, որ գարե-
հացի հինգ նկանակ և երկու փոքր
ձուկ ունի, բայց դա ի՞նչ է այսքան
մարդկանց համար»:
10 Հիսուսն էլ ասաց. «Նստեցրե՛ք
մարդկանց»: Այնտեղ շատ խոտ
կար, և մարդիկ՝ թվով մոտ հինգ
հազար, նստեցին:
11 Եվ Հիսուսը նկանակներն
առավ. և երբ գոհություն հայտնեց,
բաշխեց աշակերտներին և
աշակերտներն էլ՝ նստողներին.
նույնպես և ձկները, որչափ որ
կամեցան:
12 Եվ երբ կշտացան, ասաց Իր
աշակերտներին. «Հավաքեցե՛ք
ավելացած կտորները, որ ոչ մի
բան չկորչի»:
13 Ուստի հավաքեցին և տաս-
ներկու կողով լցրին այն հինգ
գարեհացի կտորտանքներից, որ
ուտողներից ավելացավ:
14 Բայց մարդիկ, երբ տեսան այս
հրաշքը, որ Հիսուսն արեց, ասում էին,
թե՝ «Սա՛ է ճշմարտապես այն մարգա-
րեն, որ աշխարհ պիտի գար»:
15 Երբ Հիսուսը զգաց, որ նրանք
գալու են Իրեն բռնի տանելու, որ-
պեսզի Իրեն թագավոր դարձնեն,
դարձյալ միայնակ լեռը գնաց:

## Հիսուսը Քայլում Է Ծովի Վրայով
(Մատթ 14:22-23, Մարկ 6:45-52)

16 Եվ երբ երեկո եղավ, Նրա աշա-
կերտները ծովեզերք իջան:
17 Եվ նավ մտնելով՝ գնացին դեպի
ծովի մյուս կողմը, դեպի Կափառ-
նայում: Արդեն մթնել էր, և Հիսուսը

չէր եկել նրանց մոտ:
18 Ծովն էլ հողմի սաստիկ փչելուց
փոթորկվում էր:
19 Եվ երբ թիավարելով քսանհինգ
կամ երեսուն ասպարեզի չափ
առաջ էին գնացել, տեսան Հիսու-
սին՝ ծովի վրա քայլելով գալիս,
և նավին էր մոտենում. և նրանք
վախեցան:
20 Նա էլ ասաց նրանց. «Ես եմ,
մի՛ վախեցեք»:
21 Եվ հոժարությամբ Նրան նավի մեջ
ընդունեցին. և անմիջապես նավն այն
տեղը հասավ, ուր գնում էին:
22 Հետևյալ օրը ժողովուրդը, որ ծովի
այն կողմում էր և տեսել էր, որ ուրիշ
նավ չկար այնտեղ, բացի մեկից, որի
մեջ Նրա աշակերտներն էին մտել,
իսկ Հիսուսը Իր աշակերտների հետ
նավ չէր մտել, այլ միայն Նրա աշա-
կերտներն էին գնացել:
23 (Սակայն Տիբերիայից ուրիշ
նավեր եկան այն տեղի մոտ, ուր
հաց էին կերել Տիրոջ գոհություն
մատուցելուց հետո):
24 Արդ, երբ ժողովուրդը տեսավ,
որ Հիսուսն այնտեղ չէ, և ոչ էլ նրա
աշակերտները, իրենք էլ նավերը
մտան և եկան Կափառնայում՝
Հիսուսին փնտրելու:

## Հիսուս՝ Կենաց Հացը

25 Եվ երբ Նրան ծովի մյուս
կողմում գտան, ասացին Նրան.
«Ռաբբի, ե՞րբ եկար այստեղ»:
26 Հիսուսը պատասխանեց նրանց
և ասաց. «Ճշմարիտ, ճշմարիտ եմ
ասում ձեզ. դուք Ինձ որոնում եք ոչ թե
դրա համար, որ հրաշքներ տեսաք,
այլ որ հացից կերաք և կշտացաք:
27 Աշխատեցեք ոչ թե կորստա-
կան կերակրի համար, հապա՝ այն
կերակրի, որը կմնա հավիտենա-
կան կյանքի համար, որը Մարդու
Որդին պիտի տա ձեզ, որովհետև
Հայր Աստվածը Նրա վրա Իր կնի-
քը դրեց»:
28 Այն ժամանակ Նրան ասացին.
«Ի՞նչ անենք, որ Աստծո գործերը
գործենք»:
29 Հիսուսն էլ պատասխանեց
և նրանց ասաց. «Սա է Աստծո
գործը, որ հավատաք Նրան, Ում
Նա ուղարկեց»:
30 Եվ նրանք ասացին Նրան. «Իսկ
Դու ի՞նչ նշան ես ցույց տալիս, որ
տեսնենք և հավատանք Քեզ, ի՞նչ
ես Դու գործում:
31 Մեր հայրերը անապատում մա-
նանա կերան, ինչպես գրված է, թե՝
«Երկնքից հաց տվեց նրանց ուտելու»:
32 Հիսուսն էլ նրանց ասաց.
«Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ, Մովսեսը չտվեց ձեզ այն հա
ցը երկնքից, այլ Իմ Հայրն է ձեզ
տալիս ճշմարիտ հացը երկնքից:
33 Որովհետև Աստծո հացը Նա
է, որ երկնքից է իջնում և կյանք է
տալիս աշխարհին»:
34 Նրանք էլ ասացին Նրան. «Տե՛ր,

ամեն ժամ տու՛ր մեզ այդ հացը»:
35 Հիսուսը նրանց ասաց. «Ես եմ
կենաց հացը. ո՛վ որ Ինձ գա, երբե՛ք
չպիտի քաղցի, և ո՛վ Ինձ հավատա՛,
երբե՛ք չպիտի ծարավի:
36 Բայց Ես ասացի ձեզ, թե՝ Ինձ
տեսաք էլ ու չեք հավատում:
37 Բոլորը, ում Հայրն Ինձ է տալիս,
Ինձ պիտի գան, և ով որ Ինձ գա, Ես
նրան երբեք դուրս պիտի չհանեմ,
38 որովհետև Ես երկնքից իջա ոչ թե
Իմ կամքն անելու, այլ՝ Նրա կամքը,
ով Ինձ ուղարկեց:
39 Եվ այս է Իմ Հոր կամքը, որ Ինձ
ուղարկեց, որ բոլորից, ում Հայրն
Ինձ տվեց, Ես ոչինչ չկորցնեմ, այլ
հարուցանեմ այն վերջին օրը:
40 Եվ սա է Նրա կամքը, որ Ինձ
ուղարկեց, որ ամեն ոք, ով տեսնի
Որդուն և հավատա Նրան, հավի-
տենական կյանք ունենա. և Ես պի
տի հարուցանեմ նրան վերջին օրը»:
41 Հրեաներն էլ տրտնջում էին
Նրանից, որովհետև Նա ասաց՝
«Ես եմ երկնքից իջած հացը»:
42 Եվ նրանք ասում էին. «Սա Հի-
սուսը չի՞, Հովսեփի որդին, որի
հորն ու մորը մենք ճանաչում ենք.
ուրեմն ինչպե՞ս է սա ասում, թե՝ Ես
երկնքից իջա»:
43 Հիսուսն էլ պատասխանեց և
ասաց նրանց. «Մի՛ տրտնջաք
իրար մեջ:
44 Ոչ մեկը չի կարող Ինձ գալ, եթե
Հայրը, որ Ինձ ուղարկեց, նրան
չձգի. և Ես պիտի հարուցանեմ
նրան վերջին օրը:
45 Գրված է Մարգարեների մեջ՝
«Եվ նրանք բոլորը Աստծուց պիտի
ուսուցանվեն»: Ուստի ամեն մարդ,
որ լսում ու սովորում է Հորից, Ինձ
է գալիս:
46 Սակայն ոչ մեկը Հորը չի տեսել,
բացի Նրանից, որ Աստծուց է. Նա
տեսել է Հորը:
47 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ. նա, ով հավատում է Ինձ,
հավիտենական կյանք ունի:
48 Ես եմ կենաց հացը:
49 Ձեր հայրերը անապատում
մանանան կերան, և մեռած են:
50 Այս է հացը, որ երկնքից է իջնում,
որ մարդ ուտի դրանից ու չմեռնի:
51 Ես եմ կենդանի հացը, որ երկն-
քից իջավ. եթե մեկն այս հացից
ուտի, նա հավիտյան պիտի ապ
րի, և հացը, որ Ես պիտի տամ, Իմ
մարմինն է, որը Ես պիտի տամ
աշխարհի կյանքի համար»:
52 Հրեաներն էլ այս պատճառով
իրար հետ վիճում էին՝ ասելով.
«Ինչպե՞ս կարող է այս մարդն Իր
մարմինը մեզ տալ՝ ուտելու»:
53 Հիսուսն էլ նրանց ասաց. «Ճշմա-
րիտ, ճշմարիտ եմ ասում ձեզ, եթե
Մարդու Որդու մարմինը չուտեք և
Նրա արյունը չխմեք, դուք կյանք
չունեք ձեր մեջ:
54 Ով որ Իմ մարմինն ուտի և Իմ
արյունը խմի, հավիտենական
կյանք պիտի ունենա, և Ես նրան
պիտի հարուցանեմ վերջին օրը:

55 Որովհետև Իմ մարմինը ճշմա-
րիտ կերակուր է, և Իմ արյունը
ճշմարիտ խմելիք է:
56 Իմ մարմինն ուտողը և Իմ արյունը
խմողը մնում է Իմ մեջ, և Ես՝ նրա մեջ:
57 Ինչպես կենդանի Հայրն Ինձ
ուղարկեց, և Ես ապրում եմ Հորով,
այնպես էլ նա, ով ուտում է Ինձ, նա՛
էլ պիտի ապրի Ինձանով:
58 Այս է այն հացը, որ երկնքից
իջավ: Ոչ թե ձեր հայրերի նման, որ
մանանան կերան և մեռած են. նա,
որ ուտում է այս հացը, պիտի հա-
վիտյան ապրի»:
59 Այս բաները Նա ժողովարանում
ասաց, երբ ուսուցանում էր Կա-
փառնայումի մեջ:

## Հավիտենական Կյանքի Խոսքեր

60 Նրա աշակերտներից շատերը,
երբ լսեցին սա, ասացին. «Սա ծանր
խոսք է, ո՞վ կարող է դա տանել»:
61 Երբ Հիսուսն Իր հոգում իմացավ,
թե Իր աշակերտները տրտնջում
էին դրա համար, նրանց ասաց.
«Դա գայթակղեցնու՞մ է ձեզ:
62 Իսկ ի՞նչ, եթե տեսնեք Մարդու
Որդուն վեր բարձրանալիս, ուր
առաջ էր:
63 Հոգին է, որ կենդանացնում է,
մարմնականը ոչ մի օգուտ չունի.
այն խոսքերը, որ Ես ձեզ խոսեցի,
դրանք հոգի են, և դրա՛նք կյանք են:
64 Բայց ձեր մեջ կան ոմանք, որ
չեն հավատում»: Քանի որ Հի-
սուսը սկզբից գիտեր՝ ովքեր են
չհավատացողները, և ո՛վ պիտի
մատնի Իրեն:
65 Եվ Նա ասաց. «Սրա համար
ասացի ձեզ, թե ոչ մեկը չի կարող
Ինձ մոտ գալ, եթե դա Իմ Հորից
տրված չլինի նրան»:
66 Այդ պահից Նրա աշակերտնե-
րից շատերը ետ գնացին և այլևս
Նրա հետ չէին քայլում:
67 Հիսուսն էլ ասաց տասներկուսին.
«Մի՞թե դուք էլ եք ուզում գնալ»:
68 Ապա Սիմոն Պետրոսը պա-
տասխանեց նրան. «Տե՛ր, մենք
ու՞մ գնանք. Դու հավիտենական
կյանքի խոսքերն ունես:
69 Եվ մենք հավատացինք և
գիտենք, թե Դու ես Քրիստոսը՝ կեն-
դանի Աստծո Որդին»:
70 Հիսուսը պատասխանեց նրանց.
«Չէ՞ որ Ես ձեզ՝ տասներկուսիդ
ընտրեցի, և ձեզանից մեկը սա-
տանա է»:
71 Նա այս ասաց Հուդա Իսկարի-
ովտացու մասին՝ Սիմոնի որդու,
քանի որ նա էր, որ պիտի մատներ
Իրեն՝ տասներկուսից մեկը լինելով:

## Հիսուսի Եղբայրները Չեն Հավատում

7 Այս բաներից հետո Հիսուսը
շրջում էր Գալիլիայում. քանի
որ Հրեաստանում չէր ուզում
շրջել, որովհետև հրեաներն ուզում
էին սպանել Նրան:

2 Արդ՝ հրեաների Տաղավարների
տոնը մոտ էր:
3 Եվ Նրա եղբայրները ասացին
Նրան. «Այստեղից ելիր ու գնա
Հրեաստան, որ Քո աշակերտներն
էլ տեսնեն այն գործերը, որ Դու
անում ես:
4 Քանի որ մեկը չկա, որ մի
բան թաքուն անի և դեռ ուզենա
ճանաչված լինել: Եթե Դու այս
բաներն անում ես, հայտնի՛ր Քեզ
աշխարհին»:
5 Որովհետև Իր եղբայրներն էլ չէին
հավատում Նրան:
6 Հիսուսն էլ ասաց նրանց. «Իմ
ժամը դեռ չի եկել, բայց ձեր ժամը
միշտ պատրաստ է:
7 Աշխարհը չի կարող ձեզ ատել,
բայց ատում է Ինձ, որովհետև Ես
վկայում եմ նրա մասին, թե՝ նրա
գործերը չար են:
8 Դուք գնացեք այդ տոնին, Ես դեռ
չեմ գնում այդ տոնին, որովհետև
Իմ ժամանակը դեռ չի լրացել»:
9 Երբ Նա այս խոսքերն ասաց նրանց,
Ինքը դեռ Գալիլիայում մնաց:
10 Բայց երբ Իր եղբայրները գնա-
ցին, հետո Ինքն էլ գնաց տոնին, ոչ
թե հայտնի, այլ՝ գաղտնաբար:
11 Եվ հրեաները տոնի ժամա-
նակ որոնում էին Նրան և ասում.
«Ո՞րտեղ է Նա»:
12 Եվ ժողովրդի մեջ շատ
փսփսուքներ էին գնում Նրա
վերաբերյալ. ոմանք ասում էին,
թե Նա բարի մարդ է, ուրիշներն էլ
ասում էին. «Ո՛չ, այլ ժողովրդին
մոլորեցնում է»:
13 Սակայն հրեաների վախից ոչ
ոք չէր համարձակվում բացահայտ
խոսել Նրա մասին:
14 Տոնի կեսերին Հիսուսը տաճարը
ելավ և սովորեցնում էր:
15 Եվ հրեաները զարմանում էին և
ասում. «Սա ի՞նչպես գիտի գրքերը՝
բնավ սովորած չլինելով»:
16 Հիսուսը պատասխանեց նրանց
և ասաց. «Իմ վարդապետությունն
Իմը չէ, այլ Նրանը, որ Ինձ ուղարկեց:
17 Եթե մեկը կամենա Նրա կամքը
կատարել, կիմանա այս վարդա-
պետության մասին, թե արդյոք
այն Աստծո՞ւց է, թե՞ Ես Ինձանից
եմ խոսում:
18 Ով իր մասին է խոսում, իր
անձի փառքն է որոնում, բայց Նա,
որ որոնում է Իրեն Ուղարկողի
փառքը, Նա ճշմարիտ է, և ոչ մի
անարդարություն չկա Նրա մեջ:
19 Մովսեսը ձեզ Օրենքը չտվե՞ց.
և դեռ ձեզանից ոչ մեկը Օրենքը
չի պահում: Ինչու՞ եք ուզում Ինձ
սպանել»:
20 Ժողովուրդը պատասխանեց և
ասաց. «Դև ունես, ո՞վ է ուզում Քեզ
սպանել»:
21 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրանց. «Ես մի գործ կատարեցի, և
դուք բոլորդ զարմանում եք:
22 Մովսեսը ձեզ դրա համար
թլփատությունը տվեց (որը ոչ թե
Մովսեսից էր, այլ՝ հայրերից), և դուք

շաբաթ օրը մարդ եք թլփատում:
23 Եթե մարդ շաբաթ օրը թլփա-
տություն է ընդունում, որ Մովսեսի
օրենքը չխախտվի, դուք բարկա-
նու՞մ եք Իմ վրա, որ Ես մի ամբողջ
մարդ բժշկեցի շաբաթ օրը:
24 Արտաքին երևույթով մի՛ դատեք,
այլ արդար դատաստան արեք»:

## Հիսուսը Քրիստո՞սն Է

25 Եվ երուսաղեմցիներից ոմանք
ասում էին. «Սա նա չէ՞, ում ուզում
էին սպանել:
26 Եվ ահա համարձակորեն խո-
սում է, ու ոչ մի բան չեն ասում
Նրան. միգուցե իրոք իշխանավոր-
նե՞րն էլ իմացան, թե սա է ճշմարիտ
Քրիստոսը:
27 Սակայն մենք գիտենք այս
մարդուն, թե որտեղից է, բայց երբ
Քրիստոսը գա, ոչ մեկը չի իմանա,
թե որտեղից է»:
28 Հիսուսն էլ սովորեցնելիս աղա-
ղակեց տաճարի մեջ՝ ասելով.
«Դուք և՛ Ինձ գիտեք, և՛ գիտեք, թե
որտեղից եմ. և Ես Ինձանից չեմ
եկել, բայց Նա, որ Ինձ ուղարկեց,
ճշմարիտ է, որին դուք չգիտեք:
29 Իսկ Ես գիտեմ Նրան, որովհետև
Նրանից եմ, և Նա ուղարկեց Ինձ»:
30 Եվ ուզում էին բռնել Նրան, բայց
ոչ ոք ձեռք չդրեց Նրա վրա, որով-
հետև Նրա ժամը դեռ չէր հասել:
31 Եվ ժողովրդից շատերը հա-
վատացին Նրան և ասում էին.
«Երբ Քրիստոսը գա, մի՞թե ավելի
հրաշքներ պիտի անի, քան սրանք,
որ այս մարդն արեց»:

## Սպասավորներ Ուղարկվեցին Հիսուսին Ձերբակալելու

32 Փարիսեցիները լսեցին, որ ժողո-
վուրդն այսպիսի բաներ է շշնջում
Նրա մասին. և փարիսեցիներն ու
գլխավոր քահանաները սպասա-
վորներ ուղարկեցին Նրան բռնելու:
33 Այն ժամանակ Հիսուսն ասաց
նրանց. «Մի փոքր ժամանակ Ես
դեռ ձեզ հետ եմ, ապա գնում եմ
Նրա մոտ, որ Ինձ ուղարկեց:
34 Դուք Ինձ կփնտրեք և չեք գտնի,
և որտեղ Ես եմ, այնտեղ դուք չեք
կարող գալ»:
35 Հրեաներն էլ իրար մեջ ասում
էին. «Ու՞ր պիտի գնա, որ մենք
Իրեն չպիտի գտնենք. արդյոք հե-
թանոսների մեջ ցրվածների՞ն պի
տի գնա, և հեթանոսների՞ն պիտի
սովորեցնի:
36 Ի՞նչ է այս խոսքը, որ ասաց,
թե՝ «Ինձ կորոնեք և չեք գտնի, և
որտեղ Ես եմ, այնտեղ դուք չեք
կարող գալ»:

## Կենդանի Ջրի Գետեր

37 Այդ տոնի վերջին, մեծ օրը
Հիսուսը կանգնեց և բացականչեց՝
ասելով. «Եթե մեկը ծարավ է, թող
Ինձ մոտ գա և խմի:

38 Ով Ինձ հավատա, ինչպես
Գիրքն է ասում, նրա որովայնից
կենդանի ջրի գետեր պիտի բխեն»:
39 (Նա այս ասում էր Հոգու մասին,
որն Իրեն հավատացողները պիտի
ստանան. քանի որ Սուրբ Հոգին
դեռ չէր տրված, որովհետև Հիսուսը
դեռ փառավորված չէր):

## Տարաձայնություն Ժողովրդի Մեջ

40 Արդ ժողովրդից շատերը, երբ
այս խոսքերը լսեցին, ասում էին.
«Ճշմարտապես սա՛ է Մարգարեն»:
41 Ուրիշներն ասում էին. «Սա՛
Քրիստոսն է»: Բայց ոմանք ասում
էին. «Մի՞թե Քրիստոսը Գալիլիա-
յից պիտի գա:
42 Գիրքը չի՞ ասում, թե Քրիս-
տոսը գալու է Դավթի սերնդից և
Բեթղեհեմ գյուղաքաղաքից, որտեղ
Դավիթն էր»:
43 Ուստի ժողովրդի մեջ տարաձայ-
նություն եղավ Նրա պատճառով:
44 Եվ նրանցից ոմանք կամեցան
բռնել Նրան, բայց ոչ ոք ձեռք
չտվեց Նրան:
45 Ապա սպասավորները գլխա-
վոր քահանաների և փարիսեցի-
ների մոտ եկան. և սրանք ասացին
նրանց. «Ինչու՞ չբերեցիք Նրան»:
46 Սպասավորները պատասխանե-
ցին. «Ո՛չ մի մարդ երբե՛ք այնպես
չի խոսել, ինչպես այս մարդը»:
47 Այն ժամանակ փարիսեցիները
պատասխանեցին նրանց. «Մի՞թե
դուք էլ մոլորվեցիք:
48 Մի՞թե իշխանավորներից կամ
փարիսեցիներից մեկը հավատաց
Նրան:
49 Իսկ այս ամբոխը, որ Օրենքը
չգիտի, անիծված է»:
50 Նիկոդեմոսը (նա, որ գիշերով
Հիսուսի մոտ էր եկել), նրանցից
մեկը լինելով, ասաց նրանց.
51 Մեր Օրենքը դատու՞մ է որևէ
մարդու, նախքան նրան լսելը և
իմանալը, թե ի՞նչ է արել:
52 Նրանք պատասխանեցին և
ասացին նրան. «Մի՞թե դու էլ
Գալիլիայից ես. քննի՛ր ու տես,
որ Գալիլիայից մարգարե դուրս
չի գա»:
53 Եվ ամեն մեկը իր տունը գնաց:

## Շնության Մեջ Բռնված Կինը

8 Հիսուսը գնաց Ձիթենյաց լեռը:
2 Եվ վաղ առավոտյան նորից
տաճար եկավ, և ամբողջ ժո-
ղովուրդը Նրա մոտ եկավ, և Նա
նստեց և սովորեցնում էր նրանց:
3 Դպիրներն ու փարիսեցիները մի
կին բերին Նրա մոտ՝ շնության մեջ
բռնված, և երբ սրան մեջտեղում
կանգնեցրին,
4 ասացին Նրան. «Վարդապետ,
այս կինը շնության մեջ է բռնվել,
հենց այդ մեղքը գործելու պահին:
5 Եվ Օրենքում Մովսեսը մեզ
պատվիրեց, որ այսպիսիները

պետք է քարկոծվեն: Իսկ Դու ի՞նչ
ես ասում»:
6 Նրանք այս Նրան փորձելու
համար ասացին, որպեսզի Նրա
վրա մեղադրելու բան գտնեն:
Սակայն Հիսուսը ցած նայելով,
մատով գրում էր գետնի վրա,
կարծես նրանց չէր լսել:
7 Իսկ երբ ստիպում էին՝ հարցնելով
Նրան, վեր նայեց և ասաց նրանց.
«Նա, ով առանց մեղքի է ձեր մեջ,
թող առաջինը քար գցի նրա վրա»:
8 Եվ դարձյալ ցած նայելով՝ գրում
էր գետնի վրա:
9 Իսկ նրանք, երբ այդ լսեցին,
իրենց խղճմտանքից հանդիմանվելով՝
մեկ- մեկ դուրս գնացին՝
մեծերից սկսած մինչև ամենավերջինը.
և Հիսուսը միայնակ մնաց,
և կինը՝ մեջտեղում կանգնած:
10 Երբ Հիսուսը գլուխը բարձրացրեց
և կնոջից բացի ոչ ոքի չտեսավ,
ասաց նրան. «Կի՛ն, ու՞ր են նրանք,
որ քեզ մեղադրում էին: Ոչ մեկը քեզ
չդատապարտե՞ց»:
11 Նա ասաց. «Ոչ մեկը, Տե՛ր»: Եվ
Հիսուսն ասաց նրան. «Ո՛չ էլ Ես եմ
քեզ դատապարտում. գնա՛ և այլևս
մի՛ մեղանչիր»:

## Հիսուս Է Աշխարհի Լույսը

12 Ապա Հիսուսը դարձյալ խոսեց
նրանց հետ՝ ասելով՝ «Ես եմ աշխարհի
լույսը. նա, որ Ինձ կհետևի, խավարի
մեջ չպիտի քայլի, այլ կյանքի
լույսը պիտի ունենա»:
13 Փարիսեցիներն էլ ասացին
Նրան. «Քո մասին Դու Ինքդ ես
վկայություն տալիս. Քո վկայությունը
ճշմարիտ չէ»:
14 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրանց. «Թեև Ես Իմ մասին վկայում
եմ, սակայն Իմ վկայությունը
ճշմարիտ է. քանի որ Ես գիտեմ՝
որտեղից եկա և ուր եմ գնում, բայց
դուք չեք կարող ասել, թե Ես որտեղից
եմ գալիս և ուր եմ գնում:
15 Դուք ըստ մարմնականի եք դատում.
Ես ոչ ոքի չեմ դատում:
16 Թեև, եթե Ես դատեմ, Իմ
դատաստանը ճշմարիտ է, քանի որ
Ես մենակ չեմ, այլ՝ Ես և Հայրը, որ
Ինձ ուղարկեց:
17 Ձեր Օրենքում նույնպես գրված
է, որ երկու մարդու վկայությունը
ճշմարիտ է:
18 Ե՛ս եմ, որ Իմ մասին վկայում եմ
և Հայրը, որն Ինձ ուղարկեց, վկայում
է Իմ մասին»:
19 Այն ժամանակ Նրան ասացին.
«Ու՞ր է Քո Հայրը»: Հիսուսը պատասխանեց.
«Դուք ո՛չ Ինձ գիտեք,
ո՛չ էլ Իմ Հորը. եթե Ինձ գիտենայիք,
Իմ Հորն էլ կգիտենայիք»:
20 Հիսուսն այս խոսքերը գանձատանը
խոսեց, տաճարի մեջ սովորեցնելիս.
և ոչ ոք ձեռք չտվեց Նրան,
որովհետև Նրա ժամը դեռ չէր հասել:
21 Ապա Հիսուսը նորից ասաց
նրանց. «Ես գնում եմ, և դուք պի

տի փնտրեք Ինձ և ձեր մեղքերի
մեջ պիտի մեռնեք. ուր Ես եմ գնում,
դուք չեք կարող գալ»:
22 Հրեաներն էլ ասում էին. «Արդ-
յոք Ինքն իրեն պիտի սպանի՞, որ
ասում է, թե՝ ուր Ես գնում եմ, դուք
չեք կարող գալ»:
23 Եվ Նա ասաց նրանց. «Դուք
ներքևից եք, Ես վերևից եմ. դուք
այս աշխարհից եք, Ես այս
աշխարհից չեմ:
24 Դրա համար Ես ձեզ ասացի, որ
դուք ձեր մեղքերի մեջ պիտի մեռ-
նեք, որովհետև եթե չհավատաք, որ
Ես եմ, ձեր մեղքերի մեջ կմեռնեք»:
25 Նրանք էլ ասացին Նրան. «Դու
ո՞վ ես»: Հիսուսն ասաց նրանց. «Այն
նույնը, որ սկզբից ձեզ ասացի:
26 Ես շատ բաներ ունեմ ձեր մա-
սին ասելու և դատելու, բայց Նա,
ով ինձ ուղարկեց, ճշմարիտ է. և Ես
այն բաներն եմ խոսում աշխար-
հին, ինչ որ Նրանից լսեցի»:
27 Նրանք չհասկացան, որ Նա Հոր
մասին էր ասում իրենց:
28 Ապա Հիսուսն ասաց նրանց.
«Երբ դուք Մարդու Որդուն բարձ-
րացնեք, այն ժամանակ պիտի
իմանաք, որ Ես եմ, և որ Ես Ինքս
ինձանից ոչինչ չեմ անում, այլ
ինչպես Իմ Հայրն Ինձ սովորեցրեց,
Ես այս բաներն եմ խոսում:
29 Եվ Նա, որ Ինձ ուղարկեց, Ինձ
հետ է. Հայրը Ինձ մենակ չի թողել,
որովհետև Ես միշտ անում եմ այն
բաները, ինչ Նրան է հաճելի»:
30 Երբ Նա այս բաները խոսեց, շա-
տերը հավատացին Նրան:

## Ճշմարտությունը Կազատի Ձեզ

31 Եվ Հիսուսը, այն հրեաներին, որ
հավատացին Իրեն, ասաց. «Եթե
դուք Իմ խոսքի մեջ հարատևեք,
այն ժամանակ ճշմարտապես Իմ
աշակերտները կլինեք:
32 Եվ դուք կիմանաք ճշմարտու-
թյունը, և ճշմարտությունը ձեզ
ազատ կդարձնի»:
33 Նրանք պատասխանեցին.
«Մենք Աբրահամի սերունդն ենք
և երբեք ոչ ոքի կապանքի մեջ չենք
եղել: Ինչպե՞ս ես ասում. «Ազատ
պիտի լինեք»:
34 Հիսուսը պատասխանեց նրանց.
«Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ, ո՛վ մեղք է գործում՝ մեղքի ծա
ռա է:
35 Եվ ծառան հավիտյան չի մնում
տան մեջ, բայց Որդին հավիտյան
է մնում:
36 Ուստի եթե Որդին ձեզ ազատ
դարձնի, դուք իրավի ազատ կլինեք:
37 Գիտեմ, որ Աբրահամի սերունդն
եք, բայց ուզում եք Ինձ սպանել,
որովհետև Իմ խոսքը տեղ չունի
ձեր մեջ:
38 Ես, ինչ որ տեսա Իմ Հոր մոտ,
այն եմ խոսում. և դուք, ինչ որ
տեսաք ձեր հորից, այն եք անում»:

39 Նրանք պատասխանեցին և ասացին Նրան. «Մեր հայրն Աբրահամն է»: Հիսուսը նրանց ասաց. «Եթե դուք Աբրահամի որդիներ լինեիք, Աբրահամի գործերը կգործեիք:

40 Բայց հիմա ուզում եք Ինձ սպանել՝ մի մարդու, որ ձեզ ճշմարտությունն ասաց, որն Ես Աստծուց լսեցի: Աբրահամը սա չարեց:

41 Դուք ձեր հոր գործերն եք անում»: Նրանք էլ ասացին Նրան. «Մենք պոռնկությունից չենք ծնվել, մենք մի հայր ունենք՝ Աստված»:

42 Հիսուսը նրանց ասաց. «Եթե Աստված ձեր հայրը լիներ, դուք Ինձ պիտի սիրեիք, քանի որ Ես Աստծուց ելա ու եկա. Ես ո՛չ թե Ինքս Ինձանից եկա, այլ Նա Ինձ ուղարկեց:

43 Ինչու՞ Իմ խոսքը չեք հասկանում: Հենց այն պատճառով, որ չեք կարող Իմ խոսքը լսել:

44 Դուք ձեր հորից՝ սատանայից եք և ձեր հոր ցանկություններն եք կամենում կատարել: Նա սկզբից մարդասպան էր և ճշմարտության մեջ չմնաց, որովհետև ճշմարտություն չկա նրանում: Երբ նա սուտ է խոսում, ինքն իրենից է խոսում, որովհետև նա ստախոս է, և ստության հայրը:

45 Իսկ քանի որ Ես ձեզ ճշմարտությունն եմ ասում, դուք Ինձ չեք հավատում:

46 Ձեզանից ո՞վ կարող է Ինձ մեղքի համար հանդիմանել: Իսկ եթե Ես ճշմարտությունն եմ ասում, ինչու՞ չեք հավատում Ինձ:

47 Նա, որ Աստծուց է, Աստծո խոսքերը լսում է: Դուք չեք լսում դրանք, քանի որ Աստծուց չեք»:

48 Հրեաները պատասխան տվեցին և ասացին Նրան. «Մենք լավ չե՞նք ասում, թե Դու սամարացի ես ու դև ունես»:

49 Հիսուսը պատասխանեց. «Ես դև չունեմ, այլ պատվում եմ Իմ Հորը, իսկ դուք անպատվում եք Ինձ:

50 Եվ Ես Իմ փառքը չեմ որոնում, մեկը կա, որ որոնում է ու դատում:

51 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում ձեզ. եթե մեկն Իմ խոսքը պահի, նա հավիտյան մահ չի տեսնի»:

52 Հրեաներն էլ ասացին Նրան. «Այժմ գիտենք, որ դև կա Քո մեջ. Աբրահամը մեռավ, և՝ մարգարեներն էլ, իսկ Դու ասում ես. «Եթե մեկն Իմ խոսքը պահի, նա երբեք մահ չի ճաշակի»:

53 Մի՞թե Դու ավելի մեծ ես, քան մեր հայր Աբրահամը, որ մեռավ և մարգարեներն էլ մեռան. Դու Քեզ ո՞վ ես դարձնում»:

54 Հիսուսը պատասխանեց. «Եթե Ես Իմ անձը փառավորեմ, Իմ փառքը ոչինչ է. Հայրն է Ինձ փառավորողը, Ում մասին դուք ասում եք, թե ձեր Աստվածն է.

55 Եվ դուք չեք ճանաչում Նրան, բայց Ես գիտեմ Նրան, և եթե ասեմ, թե Ես չգիտեմ Նրան, ձեզ նման

ստախոս կլինեմ, բայց Ես գիտեմ
Նրան և Նրա խոսքը պահում եմ:
56 Ձեր հայր Աբրահամը ցանկա-
ցավ Իմ օրը տեսնել. և տեսավ այն
և ուրախացավ»:
57 Հրեաները Նրան ասացին. «Դու
դեռ հիսուն տարեկան չկաս և
Աբրահամի՞ն ես տեսել»:
58 Հիսուսը նրանց ասաց. «Ճշ-
մարիտ, ճշմարիտ եմ ասում ձեզ.
Աբրահամի լինելուց առաջ Ես եմ»:
59 Ապա նրանք քարեր վերցրին
Նրա վրա նետելու, բայց Հիսու-
սը ծածկվեց և դուրս ելավ տա-
ճարից՝ նրանց միջից անցնելով և
այսպես գնաց:

## Ի Ծնե Կույրի Բժշկումը

9 Եվ երբ Հիսուսն անցնում
էր, մի մարդու տեսավ՝ ի ծնե
կույր:
2 Եվ Նրա աշակերտները հարց-
րին Նրան՝ ասելով. «Ռաբբի, ո՞վ է
մեղանչել. այս մա՞րդը, թե՞ իր
ծնողները, որ կույր է ծնվել»:
3 Հիսուսը պատասխանեց. «Ոչ
սա է մեղանչել, և ո՛չ էլ իր ծնողնե-
րը. այլ՝ որպեսզի Աստծո գործերը
հայտնի լինեն նրանում:
4 Ես պետք է Նրա գործերը գոր-
ծեմ, ով Ինձ ուղարկեց, քանի ցերեկ
է: Գիշերը գալիս է, երբ ոչ մեկը չի
կարող գործել:
5 Քանի Ես աշխարհի մեջ եմ, Ես
եմ աշխարհի լույսը»:
6 Այս ասելով՝ թքեց գետնին և թքով
շաղախ շինեց և շաղախը կույրի
աչքերի վրա ծեփեց,
7 Եվ նրան ասաց. «Գնա՛, լվաց-
վի՛ր Սիլովամի ավազանի մեջ» (որ
թարգմանվում է՝ Ուղարկված): Նա
էլ գնաց ու լվացվեց, եկավ և տես-
նում էր:
8 Բայց հարևանները, և նրանք, որ
նախապես տեսել էին, որ նա կույր
էր, ասում էին. «Սա նա չէ՞, որ նս-
տած մուրում էր»:
9 Ոմանք ասում էին. «Սա նա է».
ուրիշներ ասում էին. «Նրան նման
է», իսկ ինքն ասում էր. «Ես նա եմ»:
10 Ուստի հարցրին նրան. «Հապա
աչքերդ ինչպե՞ս բացվեցին»:
11 Նա պատասխանեց և ասաց.
«Մի մարդ՝ Հիսուս անունով, ցեխ
շինեց և աչքերիս ծեփեց և ինձ
ասաց. Գնա՛ Սիլովամի ավազանը,
և լվացվի՛ր. և ես գնացի ու լվացվեցի
և տեսողություն ստացա»:
12 Եվ նրան ասացին. «Ու՞ր է Նա».
ասաց՝ «Չգիտեմ»:
13 Փարիսեցիների մոտ տարան
նրան, որ մի ժամանակ կույր էր:
14 Եվ շաբաթ օր էր, երբ Հիսուսը
ցեխ շինեց և նրա աչքերը բացեց:
15 Ապա նորից, փարիսեցիներն
էլ հարցրին նրան, թե ինչպե՞ս
տեսողություն ստացավ: Նա
պատասխանեց նրանց և ասաց.
«Ցեխ դրեց իմ աչքերի վրա, և
լվացվեցի և տեսնում եմ»:
16 Սրա վրա փարիսեցիներից

ոմանք ասացին. «Այս մարդն Աստ-
ծուց չէ, քանի որ շաբաթ օրը չի
պահում»: Ուրիշներն ասում էին.
«Ինչպե՞ս կարող է մի մեղավոր
մարդ այսպիսի հրաշքներ անել»:
Եվ բաժանում կար նրանց մեջ:
17 Դարձյալ ասացին կույրին. «Դու
ի՞նչ ես ասում Նրա մասին, ով
աչքերդ բացեց». և նա ասաց. «Նա
մարգարե է»:
18 Սակայն հրեաները չէին հա-
վատում նրա մասին, թե նա կույր
է եղել և տեսողություն է ստացել,
մինչև որ աչքերը բացվածի ծնող-
ներին կանչեցին:
19 Նրանց հարցրին՝ ասելով. «Սա՞
է ձեր որդին, ում համար ասում եք,
թե կույր է ծնվել, հապա ինչպե՞ս է
հիմա տեսնում»:
20 Նրա ծնողները պատասխանե-
ցին նրանց և ասացին. «Գիտենք, որ
սա մեր որդին է, և որ նա կույր ծնվեց.
21 բայց թե հիմա ի՞նչպես է տես-
նում, չգիտենք, կամ՝ ո՞վ բացեց
նրա աչքերը, մենք չգիտենք. ինքը
չափահաս է. իրեն հարցրեք. թող
ինքը խոսի իր մասին»:
22 Նրա ծնողներն այս ասացին,
քանի որ հրեաներից վախենում
էին, որովհետև հրեաներն արդեն
իրար հետ համաձայնել էին, թե՝
եթե մեկը Նրան որպես Քրիստոս
դավանի, ժողովարանից վտարվի:
23 Դրա համար նրա ծնողներն
ասացին, թե՝ «Ինքը չափահաս է,
իրեն հարցրեք»:
24 Հետո դարձյալ կանչեցին կույր
եղած մարդուն և նրան ասացին.
«Աստծու՛ն փառք տուր. մենք
գիտենք, որ այդ մարդը մեղավոր է»:
25 Նա էլ պատասխանեց և ասաց.
«Նա մեղավոր է, թե ոչ, ես չգիտեմ,
ես մի բան գիտեմ, որ առաջ կույր
էի, իսկ հիմա տեսնում եմ»:
26 Եվ դարձյալ ասացին նրան.
«Ի՞նչ արեց քեզ. ինչպե՞ս բացեց
աչքերդ»:
27 Նրանց պատասխանեց. «Արդեն
ձեզ պատասխանեցի և չլսեցիք.
ինչո՞ւ եք ուզում նորից լսել. միթե
դո՞ւք էլ եք կամենում Նրա աշա-
կերտները լինել»:
28 Նրանք նախատեցին նրան և
ասացին. «Դու՛ ես Նրա աշակեր-
տը, իսկ մենք Մովսեսի աշակերտ-
ներն ենք:
29 Մենք գիտենք, որ Աստված
Մովսեսի հետ խոսեց, բայց այս
մարդու մասին մենք չգիտենք, թե
Սա որտեղից է»:
30 Մարդը պատասխանեց և նրանց
ասաց. «Հենց դա է զարմանալին,
որ դուք չգիտեք, թե Նա որտեղից է,
իսկ Նա իմ աչքերը բացեց:
31 Գիտենք, որ Աստված մեղա-
վորներին չի լսում, բայց եթե մեկն
աստվածապաշտ է և Նրա կամքը
կատարում է, նրան լսում է:
32 Աշխարհի սկզբից ի վեր չի լսված,
որ մեկը կույր ծնվածի աչքերը բացի:
33 Եթե այս մարդն Աստծուց չլիներ,
ոչ մի բան չէր կարողանա անել»:

34 Պատասխանեցին և նրան ասա-
ցին. «Դու ամբողջապես մեղքի մեջ
ես ծնվել, և դու՞ ես մեզ սովորեց-
նում». և դուրս արին նրան:
35 Հիսուսը լսեց, որ նրան դուրս
հանեցին. և երբ նրան գտավ,
ասաց նրան. «Դու հավատու՞մ ես
Աստծո Որդուն»:
36 Նա պատասխանեց և ասաց.
«Տե՛ր, ո՞վ է Նա, որ հավատամ
Նրան»:
37 Հիսուսն էլ նրան ասաց. «Դու
Նրան և՛ տեսար, և՛ քեզ հետ
խոսողը Նա Ինքն է»:
38 Եվ նա ասաց. «Հավատում եմ,
Տե՛ր» և երկրպագեց Նրան:
39 Եվ Հիսուսն ասաց. «Ես դատաս-
տանի համար եկա այս աշխարհը,
որպեսզի ովքեր չեն տեսնում, տես-
նեն, և ովքեր տեսնում են, կուրանան»:
40 Եվ փարիսեցիներից ոմանք, որ
Նրա հետ էին, լսեցին այս խոսքե-
րը և ասացին Նրան. «Միթե մե՞նք
էլ կույր ենք»:
41 Հիսուսը նրանց ասաց. «Եթե
կույր լինեիք, մեղք չէիք ունենա,
բայց հիմա ասում եք՝ «Մենք
տեսնում ենք». դրա համար ձեր
մեղքը մնում է:

## Բարի Հովիվը

10 Ճշմարիտ, ճշմարիտ եմ
ասում ձեզ. «Ով դռնով
չի մտնում ոչխարների
փարախը, այլ մի ուրիշ ճանապար-
հով է վեր բարձրանում, նա գող է և
ավազակ:
2 Բայց նա, որ դռնով է մտնում,
ոչխարների հովիվն է:
3 Դռնապանը բացում է նրա հա-
մար. և ոչխարները նրա ձայնը
լսում են, և նա իր ոչխարներին
անունով է կանչում և նրանց դուրս
է առաջնորդում:
4 Եվ երբ նա իր ոչխարներին դուրս
է հանում, նրանց առջևից է գնում, և
ոչխարները հետևում են նրան, որով-
հետև նրանք գիտեն նրա ձայնը:
5 Բայց օտարի ետևից չեն գնա,
այլ կփախչեն նրանից, որովհետև
նրանք օտարների ձայնը չեն
ճանաչում»:
6 Այս առակը Հիսուսն ասաց նրանց,
բայց նրանք չհասկացան, թե ինչ էր
այն, որ Նա իրենց ասում էր:
7 Ապա Հիսուսը դարձյալ ասաց
նրանց. «Ճշմարիտ, ճշմարիտ եմ
ասում ձեզ՝ Ես եմ ոչխարների դուռը:
8 Բոլոր նրանք, որ Ինձանից առաջ
եկան, գողեր և ավազակներ են,
բայց ոչխարները նրանց չլսեցին:
9 Ես եմ դուռը. եթե մեկն Ինձանով
ներս մտնի, պիտի՛ փրկվի, և
պիտի ներս մտնի և դուրս գնա և
արոտ գտնի:
10 Գողը ուրիշ բանի համար չի
գալիս, այլ միայն գողանալու,
սպանելու և կորստյան մատնելու:
Ես եկա, որ նրանք կյանք ունենան,
և որ այն ավելի առատորեն
ունենան:

11 Ես եմ բարի հովիվը. բարի
հովիվը իր կյանքը տալիս է
ոչխարների համար:
12 Բայց նա, որ վարձկան է և ո՛չ
թե հովիվը, և ոչխարները իրենը
չեն, երբ տեսնում է, որ գայլը գա
լիս է, թողնում է ոչխարներին ու
փախչում, և գայլը հափշտակում է
ոչխարներին ու նրանց ցրում:
13 Վարձկանը փախչում է, որով-
հետև վարձկան է և ոչխարների
համար հոգ չի տանում:
14 Ես եմ բարի Հովիվը, և Ես Իմ
ոչխարներին ճանաչում եմ և
ճանաչվում եմ Իմը եղողների
կողմից:
15 Ինչպես Հայրը Ինձ գիտի, այդպես
էլ Ես գիտեմ Հորը, և Ես Իմ կյանքը
դնում եմ ոչխարների համար:
16 Եվ ուրիշ ոչխարներ էլ ունեմ Ես,
որոնք այս փարախից չեն, նրանց
նույնպես պետք է բերեմ, և նրանք
կլսեն Իմ ձայնը, և մի հոտ և մի
հովիվ կլինի:
17 Դրա համար է Իմ Հայրը սիրում
Ինձ, որովհետև Ես Իմ կյանքը դնում
եմ, որպեսզի դարձյալ առնեմ այն:
18 Ոչ ոք այն չի վերցնում Ինձանից,
այլ Ես Ինքս եմ այն վար դնում.
Ես իշխանություն ունեմ այն վար
դնելու և իշխանություն ունեմ
վերստին այն առնելու. այս պատ-
վերը Իմ Հորից ստացա»:
19 Այս խոսքերի պատճառով հրեա-
ների մեջ նորից բաժանում եղավ:
20 Եվ նրանցից շատերն ասում էին.
«Նա դև ունի և խենթ է, ինչու՞ եք
լսում Նրան»:
21 Ուրիշներն ասում էին. «Այս խոս-
քերը դիվահարի խոսքեր չեն. մի՞թե
դևը կարող է կույրի աչքերը բանալ»:

## Հովիվը Գիտի Իր Ոչխարներին

22 Եվ Երուսաղեմում Նավակատի-
քի տոնն էր. և ձմեռ էր:
23 Եվ Հիսուսը շրջում էր տաճա-
րում՝ Սողոմոնի սրահի մեջ:
24 Հրեաներն էլ Նրան շրջապա-
տեցին և ասացին Նրան. «Մինչև
ե՞րբ մեզ տարակուսանքի մեջ
պիտի պահես. եթե Դու Քրիստոսն
ես, պարզորեն ասա մեզ»:
25 Հիսուսը պատասխանեց նրանց.
«Ես ձեզ ասացի, և դուք չհավատա-
ցիք. այն գործերը, որ անում եմ Իմ
Հոր անունով, դրանք վկայում են
Իմ մասին:
26 Բայց դուք չեք հավատում,
որովհետև Իմ ոչխարներից չեք,
ինչպես Ես ձեզ ասացի:
27 Իմ ոչխարներն Իմ ձայնը լսում
են, և Ես գիտեմ նրանց, և նրանք
հետևում են Ինձ:
28 Եվ Ես հավիտենական կյանք
եմ տալիս նրանց, և նրանք հավիտ-
յան չեն կորչի, և ոչ ոք Իմ ձեռքից չի
հափշտակի նրանց:
29 Իմ Հայրը, որ նրանց տվեց Ինձ,
բոլորից մեծ է, և ոչ մեկը չի կարող
Իմ Հոր ձեռքից հափշտակել նրանց:

30 Ես և Իմ Հայրը մեկ ենք»:
31 Հրեաները կրկին քարեր վերցրե-
ցին, որ Նրան քարկոծեն:
32 Հիսուսը նրանց պատասխանեց.
«Շատ բարի գործեր ցույց տվեցի
ձեզ Իմ Հորից. նրանցից ո՞ր գործի
համար եք Ինձ քարկոծում»:
33 Հրեաները պատասխանեցին
Նրան՝ ասելով. «Բարի գործերի
համար չենք քարկոծում Քեզ, այլ
հայհոյություն անելու համար և
դրա համար, որ Դու մարդ լինելով՝
Ինքդ քեզ Աստված ես դարձնում»:
34 Հիսուսը նրանց պատասխանեց.
«Գրված չէ՞ ձեր Օրենքի մեջ՝ «Ես
ասացի, թե դուք աստվածներ եք»:
35 Եթե Նա աստվածներ է կոչում
նրանց, ում Աստծո Խոսքն եկավ, և
Գիրքը չի եղծվի,
36 հապա Նրան, ում Հայրը սրբեց և
աշխարհ առաքեց, դուք Նրա՞ մա-
սին եք ասում՝ «Դու հայհոյություն
ես անում», որովհետև ասացի, թե՝
Ես Աստծո Որդին եմ:
37 Եթե Ես Իմ Հոր գործերը չեմ
գործում, մի՛ հավատաք Ինձ:
38 Իսկ եթե գործում եմ, թեև Ինձ
չհավատաք, գործերի՛ն հավատա-
ցեք, որ գիտենաք և հավատաք, թե
Հայրը Իմ մեջ է, և Ես՝ Իր մեջ»:
39 Դարձյալ ուզում էին Նրան բռնել,
բայց Նա նրանց ձեռքից խուսափեց:
40 Եվ նորից գնաց Հորդանանի
մյուս կողմը, այնտեղ, ուր սկզբում
Հովհաննեսը մկրտում էր. և այն-
տեղ էր մնում:
41 Եվ շատերը Նրա մոտ եկան և
ասում էին. «Հովհաննեսը ոչ մի
հրաշք չգործեց, բայց ամեն ինչ, որ
Հովհաննեսն ասաց այս մարդու
մասին, ճշմարիտ էր»:
42 Եվ այնտեղ շատերը հավատա-
ցին Նրան:

## Ղազարոսի Մահը

11 Արդ, մի մարդ հիվանդ
էր, Ղազարոս անունով,
Բեթանիայից՝ Մարիամի և
նրա քույր Մարթայի գյուղից:
2 (Դա այն Մարիամն էր, որ Տիրոջը
յուղով օծեց և Նրա ոտքերը իր
մազերով սրբեց, որի եղբայրը՝
Ղազարոսը, հիվանդ էր):
3 Ուստի նրա քույրերը լուր ուղար-
կեցին Նրան՝ ասելով. «Տե՛ր, ահա՛
նա՝ ում Դու սիրում ես, հիվանդ է»:
4 Հիսուսը, երբ այդ լսեց, ասաց.
«Այս հիվանդությունը մահվան
համար չէ, այլ Աստծո փառքի
համար է, որպեսզի Աստծո Որդին
դրանով փառավորվի»:
5 Հիսուսը սիրում էր Մարթային և
նրա քրոջը և Ղազարոսին:
6 Եվ երբ լսեց, թե նա հիվանդ է,
երկու օր էլ մնաց այնտեղ, որտեղ
գտնվում էր:
7 Ապա դրանից հետո Նա Իր աշա-
կերտներին ասաց. «Եկե՛ք նորից
Հրեաստան գնանք»:
8 Իր աշակերտներն ասացին Նրան.

«Ռաբբի՛, հրեաները դեռ վերջերս
ուզում էին Քեզ քարկոծել. Դու
նորից այնտե՞ղ պիտի գնաս»:
9 Հիսուսը պատասխանեց. «Ցերեկը
տասներկու ժամ չունի՞: Եթե մեկն
օրվա մեջ քայլի, չի սայթաքի, որով-
հետև նա տեսնում է այս աշխարհի
լույսը:
10 Բայց եթե մեկը գիշերը քայլի՝
կսայթաքի, որովհետև լույս չկա
իր մեջ»:
11 Այս բաներն ասաց Նա. և դրանից
հետո ասաց նրանց. «Մեր բարեկամ
Ղազարոսը քնած է, բայց Ես գնամ,
որպեսզի նրան քնից արթնացնեմ»:
12 Աշակերտները Նրան ասացին.
«Տե՛ր, եթե քնել է, կլավանա»:
13 Բայց Հիսուսը նրա մահվան
մասին էր ասում, մինչդեռ նրանք
կարծեցին, թե քնելով հանգստա-
նալու մասին է խոսում:
14 Այն ժամանակ Հիսուսը հայտ-
նապես ասաց նրանց. «Ղազարոսը
մեռավ:
15 Եվ ուրախ եմ ձեզ համար, որ Ես
այնտեղ չէի, որ դուք հավատաք Ինձ.
սակայն եկե՛ք գնանք նրա մոտ»:
16 Ապա Թովմասը, որ Երկվոր-
յակ էր կոչվում, իր աշակերտա-
կիցներին ասաց. «Մենք էլ գնանք,
որպեսզի մենք էլ Իր հետ մեռնենք»:

## Ես Եմ Հարությունը Եվ Կյանքը

17 Երբ Հիսուսը եկավ, գտավ, որ նա
արդեն չորս օրից ի վեր գերեզմանի
մեջ է դրված:
18 Արդ, Բեթանիան Երուսաղեմին
մոտ էր, մոտ տասնհինգ ասպարեզի
հեռավորությամբ:
19 Եվ հրեաներից շատերը եկել էին
Մարթայի և Մարիամի մոտ, որ-
պեսզի նրանց մխիթարեն իրենց
եղբոր համար:
20 Երբ Մարթան լսեց, թե Հիսու-
սը գալիս է, անմիջապես գնաց և
դիմավորեց Նրան, բայց Մարիամը
դեռ տանը նստած էր:
21 Եվ Մարթան ասաց Հիսուսին.
«Տե՛ր, եթե այստեղ լինեիր, Իմ
եղբայրը չէր մեռնի:
22 Բայց ես գիտեմ, որ նույնիսկ հի
մա, Դու ինչ որ Աստծուց խնդրես,
Աստված կտա Քեզ»:
23 Հիսուսը նրան ասաց. «Քո
եղբայրը հարություն պիտի առնի»:
24 Մարթան Նրան ասաց. «Ես գի
տեմ, որ Նա հարություն պիտի
առնի հարության ժամանակ՝
վերջին օրում»:
25 Հիսուսը նրան ասաց. «Ես եմ հա-
րությունը և կյանքը. ով հավատում
է Ինձ, թեև մեռնի, պիտի՛ ապրի:
26 Եվ ով ապրում է և հավատում է
Ինձ, երբեք պիտի չմեռնի: Դու հա-
վատո՞ւմ ես սրան»:
27 Նա ասաց Նրան. «Այո՛, Տե՛ր, ես
հավատում եմ, որ Դու Քրիստոսն
ես, Աստծո Որդին, որ աշխարհ պի
տի գար»:
28 Եվ երբ այս ասաց, գնաց, թա-
քուն կանչեց իր քրոջը՝ Մարիամին

և ասաց. «Վարդապետը եկել է և
կանչում է քեզ»:
29 Նա, երբ այդ լսեց, շտապով վեր
կացավ ու եկավ Նրա մոտ:
30 Հիսուսը դեռ գյուղ չէր եկել, այլ
այնտեղ էր, ուր Մարթան Նրան
հանդիպեց:
31 Բայց հրեաները, որոնք տանը
նրա հետ էին և նրան մխիթա-
րում էին, երբ տեսան Մարիամին,
որ շտապով վեր կացավ և դուրս
գնաց, նրա ետևից գնացին, ասե-
լով՝ «Գերեզմանն է գնում, որ այն-
տեղ լա»:
32 Իսկ Մարիամը, երբ այնտեղ
եկավ, ուր Հիսուսն էր, և տեսավ
Նրան, Նրա ոտքերն ընկավ և
ասաց Նրան. «Տե՛ր, եթե այստեղ
լինեիր, իմ եղբայրը չէր մեռնի»:
33 Երբ Հիսուսը տեսավ նրան լաց
լինելիս, և նրա հետ եկած հրեա-
ներն էլ լալիս էին, Իր հոգում խիստ
խռովվեց ու հուզվեց:
34 Եվ ասաց. «Ո՞ւր դրիք նրան»:
Նրան ասացին. «Տե՛ր, ե՛կ և տես»:
35 Հիսուսն արտասվեց:
36 Հրեաներն ասում էին. «Տե՛ս, ինչ-
պես էր սիրում նրան»:
37 Եվ նրանցից ոմանք ասում էին.
«Մի՞թե այս մարդը, որ կույրի
աչքերը բացեց, չէր կարող այնպես
անել, որ այս մարդն էլ չմեռներ»:
38 Եվ Հիսուսը, կրկին Իր սրտում
հեծելով, գերեզմանը եկավ: Այն մի
քարայր էր, և վրան քար էր դրված:
39 Հիսուսն ասաց. «Այդ քարը վերց-
րեք»: Մեռյալի քույրը՝ Մարթան,
ասաց Նրան. «Տե՛ր, արդեն հոտած
կլինի, որովհետև չորս օր է, ինչ նա
մեռած է»:
40 Հիսուսը նրան ասաց. «Մի՞թե Ես
քեզ չասացի, որ եթե հավատաս,
Աստծո փառքը կտեսնես»:
41 Այն ժամանակ նրանք քարը
վերցրին այնտեղից, որտեղ մեռ-
յալն էր դրված: Եվ Հիսուսը Իր
աչքերը դեպի վեր բարձրացրեց
և ասաց. «Հա՛յր, գոհանում եմ
Քեզանից, որ Ինձ լսեցիր:
42 Եվ Ես գիտեի, որ Դու միշտ լսում
ես Ինձ. բայց շուրջս կանգնած
ժողովրդի համար ասացի այդ,
որպեսզի նրանք հավատան, որ
Դու ուղարկեցիր Ինձ»:
43 Այս ասելուց հետո, Նա մեծ
ձայնով կանչեց. «Ղազարո՛ս,
դո՛ւրս արի»:
44 Եվ նա, որ մեռած էր, դուրս
եկավ՝ ոտքերը և ձեռքերը պատա-
նով կապված, և իր երեսը վարշա-
մակով էր փաթաթված: Հիսուսը
ասաց նրանց. «Արձակեցե՛ք նրան
և թողե՛ք, որ գնա»:
45 Եվ հրեաներից շատերը, որ
Մարիամի մոտ էին եկել և տեսան
այն բաները, որ Հիսուսն արեց,
հավատացին Նրան:
46 Բայց նրանցից ոմանք գնացին
փարիսեցիների մոտ և ասացին
նրանց, ինչ որ Հիսուսն արեց:

## Հրեաները Դավադրում են Հիսուսի Դեմ
(Մատթ 26:1-5, Մարկ 14:1-2, Ղուկ 22:1-2)

47 Այն ժամանակ գլխավոր քա-
հանաներն ու փարիսեցիներն ատ
յան գումարեցին և ասացին. «Ի՞նչ
անենք, քանի որ այդ մարդը շատ
հրաշքներ է գործում:
48 Եթե մենք Նրան այսպես թող-
նենք, բոլորը պիտի հավատան
Նրան. և հռոմեացիները պիտի
գան ու մեր տե՛ղն էլ, մեր ա՛զգն էլ
պիտի առնեն»:
49 Եվ նրանցից մեկը՝ Կայիափան,
որ այն տարվա քահանայապետն
էր, ասաց նրանց. «Դուք ոչինչ չգի-
տեք,
50 և չեք էլ մտածում, որ լավ է մեզ
համար, որ մեկ մարդ մեռնի ժո-
ղովրդի համար, քան թե ամբողջ
ազգը կորչի»:
51 Բայց սա իրենից չասաց. այլ
որովհետև այն տարվա քահանա-
յապետն էր, մարգարեացավ, թե
Հիսուսը պիտի մեռներ ազգի
համար:
52 Եվ ոչ միայն այդ ազգի համար,
այլ, որ Նա նույնպես ի մի հավաքի
Աստծո զավակներին, որոնք ամե-
նուրեք ցրված են:
53 Արդ, այդ օրվանից միասին խոր-
հուրդ արեցին, որ Նրան սպանեն:
54 Հիսուսը այնուհետև ազատորեն
չէր շրջում հրեաների մեջ, այլ այն-
տեղից անապատի մոտ մի վայր
գնաց, Եփրայիմ կոչված քաղաքը,
և Իր աշակերտների հետ այնտեղ
էր մնում:
55 Եվ հրեաների Զատիկը մոտ էր,
և այն գավառից շատերը Զատկից
առաջ Երուսաղեմ ելան, որ իրենց
անձերը սրբեն:
56 Նրանք փնտրում էին Հիսուսին և
տաճարի մեջ կանգնած ժամանակ
իրար մեջ խոսում. «Ի՞նչ եք կարծում,
մի՞թե այս տոնին Նա չի գալու»:
57 Արդ, գլխավոր քահանաները և
փարիսեցիները հրաման էին տվել,
որ եթե մեկն իմանա, թե Նա որտեղ
է, իմաց տա, որ բռնեն Նրան:

## Օծում Բեթանիայում
(Մատթ 26:6-13, Մարկ 14:3-9)

12 Եվ Հիսուսը Զատկից վեց
օր առաջ եկավ Բեթա
նիա, որտեղ Ղազարոսն
էր, որ մեռած էր եղել, ում Նա
մեռելներից հարուցանեց:
2 Եվ այնտեղ ընթրիք պատրաս-
տեցին Նրա համար. Մարթան ծա-
ռայում էր, և Ղազարոսը Նրա հետ
սեղան նստողներից մեկն էր:
3 Ապա Մարիամը մեկ լիտր նար-
դոսի ազնիվ յուղ առավ, շատ թան-
կարժեք, և Հիսուսի ոտքերն օծեց, և
Նրա ոտքերն իր մազերով սրբեց. և
տունը յուղի բուրմունքով լցվեց:
4 Իսկ Նրա աշակերտներից

մեկը՝ Հուդա Իսկարիովտացին, Սիմոնի որդին, որ մատնելու էր Նրան, ասաց.
5 «Ինչու՞ այդ յուղը չծախվեց երեք հարյուր դահեկանի և աղքատներին չտրվեց»:
6 Նա այս ասաց ոչ թե, որ հոգում էր աղքատների համար, այլ որովհետև գող էր և գանձանակն ինքն էր կրում և մեջը դրվածը ինքն էր պահում:
7 Այն ժամանակ Հիսուսն ասաց. «Հանգի՛ստ թող նրան, նա Իմ թաղման օրվա համար էր պահել սա:
8 Որովհետև աղքատներին միշտ ձեզ հետ ունեք, բայց Ինձ միշտ չունեք»:
9 Եվ հրեաներից շատ ժողովուրդ իմացավ, որ Նա այնտեղ է, և եկան ոչ միայն Հիսուսի համար, այլ նաև Ղազարոսին տեսնելու, ում Նա մեռելներից հարուցանեց:
10 Իսկ գլխավոր քահանաները խորհուրդ արեցին, որ Ղազարոսին էլ սպանեն:
11 Որովհետև նրա պատճառով հրեաներից շատերը հեռանում էին և հավատում Հիսուսին:

## Հաղթական Մուտքը Երուսաղեմ

(Մատթ 21:1-11, Մարկ 11:1-11, Ղուկ 19:28-40)

12 Հետևյալ օրը շատ ժողովուրդ, որ եկել էին տոնին, երբ լսեցին, թե Հիսուսը գալիս է Երուսաղեմ,
13 արմավենու ճյուղեր վերցրեցին և Նրան ընդառաջ գնացին և աղաղակում էին. «Ովսա՜ննա, օրհնյալ է Իսրայելի թագավորը, որ Տիրոջ անունով է գալիս»:
14 Եվ Հիսուսը մի ավանակ գտավ և նրա վրա նստեց, ինչպես գրված է, թե՝
15 «Մի՛ վախեցիր, ո՛վ Սիոնի դուստր, ահա՛ քո թագավորը գալիս է՝ էշի քուռակի վրա նստած»:
16 Նրա աշակերտները սկզբում չհասկացան այս բաները, բայց երբ Հիսուսը փառավորվեց, այն ժամանակ նրանք մտաբերեցին, թե այս բաները գրված էին Նրա մասին, և որ իրենք այս բաներն արեցին Նրան:
17 Իսկ մարդիկ (որ Նրա հետ էին, երբ Նա Ղազարոսին գերեզմանից դուրս կանչեց և մեռելներից հարուցանեց), վկայություն էին տալիս:
18 Այս պատճառով ժողովուրդն էլ Նրան ընդառաջ գնաց, որովհետև լսեցին, թե Նա այդ հրաշքն էր արել:
19 Իսկ փարիսեցիները միմյանց ասում էին. «Տեսնու՞մ եք, որ դուք ոչինչ չեք կարողանում անել, ահա՛ աշխարհը Նրա ետևից գնաց»:
20 Եվ նրանց մեջ մի քանի հույներ կային, որոնք եկել էին այդ տոնին պաշտամունք մատուցելու:
21 Նրանք եկան Փիլիպպոսի մոտ, որ Գալիլիայի Բեթսայիդայից էր, Նրան խնդրում էին և ասում. «Տե՛ր, մենք ուզում ենք Հիսուսին տեսնել»:
22 Փիլիպպոսը եկավ Անդրեասին ասաց, և ապա՝ Անդրեասն ու Փիլիպպոսն ասացին Հիսուսին:

23 Հիսուսն էլ պատասխանեց նրանց՝
ասելով. «Ժամը հասավ, որ Մարդու
Որդին փառավորվի:
24 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ. եթե ցորենի հատիկը հողի մեջ
չընկնի և չմեռնի, այն միայնակ
կմնա, իսկ եթե մեռնի, շատ
պտուղ կբերի:
25 Նա, ով սիրում է իր կյանքը,
պետք է կորցնի այն, և ով ատում
է իր կյանքն այս աշխարհում,
պիտի պահի այն հավիտենական
կյանքի համար:
26 Եթե մեկն Ինձ ծառայի, թող
Իմ ետևից գա. և որտեղ Ես եմ,
այնտեղ էլ Իմ ծառան պիտի լինի.
եթե մեկն Ինձ ծառայի, Իմ Հայրը
պիտի պատվի նրան:
27 Հիմա հոգիս խռովված է. և ի՞նչ
ասեմ՝ Հա՛յր, փրկի՛ր Ինձ այս ժա-
մից. սակայն հենց այս նպատակի
համար Ես եկա այս ժամին:
28 Հա՛յր, փառավորի՛ր Քո անունը»:
Եվ երկնքից ձայն եկավ, ասելով.
«Ես թե՛ փառավորեցի այն, և թե՛
նորից պիտի փառավորեմ»:
29 Եվ ժողովուրդը, որ կանգնած
էր և լսեց դա, ասում էր. «Որոտ-
մունք եղավ», ուրիշներն ասում էին.
«Հրեշտակ խոսեց Նրա հետ»:
30 Հիսուսը պատասխանեց և
ասաց. «Այս ձայնը ոչ թե Ինձ
համար եկավ, այլ՝ ձեզ համար:
31 Հիմա է այս աշխարհի դատաս-
տանը. հիմա՛ այս աշխարհի
իշխանը դուրս պիտի գցվի:
32 Եվ Ես, երբ Ես երկրից բարձ-
րացվեմ, բոլոր մարդկանց դեպի
Ինձ պիտի ձգեմ»:
33 Նա այս ասաց, որ ցույց տա, թե
ինչպիսի մահով պիտի մեռնի:
34 Ժողովուրդը պատասխանեց
Նրան. «Մենք Օրենքից լսել ենք, որ
Քրիստոսը մնում է հավիտյան, իսկ
Դու ինչպե՞ս ես ասում՝ պետք է, որ
Մարդու Որդին բարձրացվի. ո՞վ է
այս Մարդու Որդին»:
35 Հիսուսն էլ նրանց ասաց. «Դեռ
մի քիչ ժամանակ լույսը ձեզ հետ է:
Քայլեցե՛ք, քանի լույսն ունեք, չլինի
թե խավարը ձեզ վրա հասնի, քանի
որ խավարում քայլողը չգիտի, թե
ուր է գնում:
36 Քանի դեռ լույս ունեք, հավա-
տացե՛ք լույսին, որ դուք լույսի
որդիներ լինեք»: Հիսուսն այս
բաները խոսեց և բաժանվեց ու
թաքնվեց նրանցից:

## Հրեաների Անհավատությունը

37 Թեպետ և Նա այնքան հրաշք-
ներ էր արել նրանց առջև, տակա-
վին նրանք չհավատացին Նրան:
38 Որպեսզի կատարվի Եսայի
մարգարեի խոսքը, որ ասաց. «Տե՛ր,
ո՞վ հավատաց մեր լուրին, և Տիրոջ
բազուկն ո՞ւմ հայտնվեց»:
39 Դրա համար չէին կարող
հավատալ, որովհետև Եսայինն այդ
դարձյալ ասաց.

40 «Նա նրանց աչքերը կուրացրեց
և նրանց սրտերը կարծրացրեց, որ
չտեսնեն իրենց աչքերով, ո՛չ էլ հաս-
կանան իրենց սրտերով, և դարձի
գան, ու Ես բուժեմ նրանց»:
41 Եսային սա ասաց, երբ տեսավ
Նրա փառքը. և խոսեց Նրա մասին:
42 Բայց և այնպես իշխաններից
էլ շատերը հավատացին Նրան.
սակայն փարիսեցիների պատճա-
ռով չէին դավանում Նրան, որ ժո-
ղովարանից չվտարվեն,
43 որովհետև մարդկանց փառքն
ավելի սիրեցին, քան թե Աստծո
փառքը:
44 Հիսուսն աղաղակում էր ու
ասում. «Ով Ինձ հավատում է, ոչ
թե Ինձ է հավատում, այլ Նրան, Ով
Ինձ ուղարկեց:
45 Եվ նա, որ տեսնում է Ինձ, տես-
նում է Նրան, Ով Ինձ ուղարկեց:
46 Ես աշխարհին լույս եկա, որ ով
Ինձ հավատա, խավարի մեջ չմնա:
47 Եվ եթե մեկն Իմ խոսքերը լսի և
չհավատա, Ես չեմ դատում նրան,
որովհետև Ես չեկա, որ աշխարհը
դատեմ, այլ, որ փրկեմ աշխարհը:
48 Ով մերժում է Ինձ և Իմ խոսքերը
չի ընդունում, կա՛ մեկը, որ դատում
է նրան. այն խոսքը, որ Ես խոսեցի,
դա կդատի նրան վերջին օրը:
49 Որովհետև Ես Ինքս Ինձանից
չխոսեցի, այլ Հայրը, որն Ինձ ուղար-
կեց, Նա Ինձ պատվեր տվեց, թե ինչ
պիտի ասեմ և ինչ պիտի խոսեմ:
50 Եվ Ես գիտեմ, որ Նրա պատ-
վիրանը հավիտենական կյանք
է. ուստի, ինչ որ Ես խոսում եմ,
ինչպես Հայրն ասաց Ինձ՝ այնպես
եմ խոսում»:

## Հիսուսը Լվանում Է Աշակերտների Ոտքերը

13 Արդ, Զատկի տոնից
առաջ, երբ Հիսուսն իմա-
ցավ, որ Իր ժամը հասել է,
որպեսզի Ինքն այս աշխարհից ել
նի Հոր մոտ, իրեններին, որոնք այս
աշխարհում են, սիրեց. Նա մինչև
վերջ սիրեց նրանց:
2 Եվ ընթրիքի ավարտին (սա-
տանան Հուդա Իսկարիովտացու՝
Սիմոնի որդու, սրտի մեջ արդեն
դրել էր, որ մատնի Նրան),
3 Հիսուսն իմանալով, որ Հայրն
ամեն բան Իր ձեռքն է տվել, և որ
Ինքը Աստծուց եկավ ու Աստծո
մոտ է գնում,
4 ընթրիքից վեր կացավ, մի կողմ
դրեց Իր հանդերձները և մի սրբիչ
վերցնելով մեջքին փաթաթեց:
5 Հետո կոնքի մեջ ջուր լցրեց և սկ-
սեց աշակերտների ոտքերը լվանալ
և մեջքին կապած սրբիչով սրբել:
6 Ապա Նա Սիմոն Պետրոսի մոտ
եկավ. և Պետրոսն ասաց Նրան.
«Տե՛ր, Դու՞ ես իմ ոտքերը լվանում»:
7 Հիսուսը պատասխանեց և ասաց
նրան. «Ինչ որ Ես անում եմ, դու
հիմա չես իմանում, բայց սրանից

հետո կիմանաս»:
8 Պետրոսը ասաց Նրան. «Դու
երբե՛ք պիտի չլվանաս իմ ոտքերը»:
Հիսուսը պատասխանեց նրան.
«Եթե Ես քեզ չլվանամ, դու Ինձ
հետ բաժին չունես»:
9 Սիմոն Պետրոսն ասաց Նրան.
«Տե՛ր, ոչ միայն իմ ոտքերը, այլև իմ
ձեռքերը և իմ գլուխը»:
10 Հիսուսը նրան ասաց. «Նա, որ
լվացված է, պետք չունի, բացի իր
ոտքերը լվալուց, այլ ամբողջովին
մաքուր է. և դուք մաքուր եք, բայց՝
ոչ բոլորդ»:
11 Քանի որ գիտեր, ով է Իրեն
մատնելու, այդ պատճառով ասաց.
«Դուք բոլորդ չէ, որ մաքուր եք»:
12 Եվ երբ նրանց ոտքերը լվաց, Իր
հանդերձները վերցրեց ու դարձ-
յալ սեղան նստեց և նրանց ասաց.
«Գիտե՞ք, թե Ես ինչ արեցի ձեզ:
13 Դուք Ինձ Վարդապետ և Տեր եք
կոչում և լավ եք ասում, որովհետև
Ես ե՛մ:
14 Արդ, եթե Ես՝ ձեր Տերն ու Վար-
դապետը, ձեր ոտքերը լվացի, դուք էլ
պետք է միմյանց ոտքերը լվանաք:
15 Որովհետև Ես ձեզ օրինակ
տվեցի, որ դուք անեք, ինչպես Ես
ձեզ արեցի:
16 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ. ծառան իր տիրոջից մեծ չէ. ո՛չ
էլ ուղարկվածը ավելի մեծ է, քան
իրեն ուղարկողը:
17 Եթե այս բաները գիտեք, երանե-
լի եք դուք, եթե դրանք անեք:
18 Ես ձեզ բոլորիդ մասին չեմ
ասում. Ես գիտեմ՝ ում եմ ընտրել,
այլ որպեսզի գրվածը կատարվի՝
Նա որ Ինձ հետ հաց էր ուտում, Իմ
դեմ իր կրունկը բարձրացրեց:
19 Այժմվանից ձեզ ասում եմ՝ լինե-
լուց առաջ, որ երբ լինի, հավատաք,
թե՝ Ես եմ:
20 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ. ով ընդունի նրան, ում Ես եմ
ուղարկում, Ինձ է ընդունում. և
ով ընդունում է Ինձ, ընդունում է
Նրան, որ Ինձ ուղարկեց»:

## Հիսուսի Կանխասացությունը Իր Մատնության Մասին

(Մատթ 26:20-25, Մարկ 14:17-21, Ղուկ 22:21-23)

21 Երբ Հիսուսն այս ասաց, խռով-
վեց Իր հոգում և վկայեց ու ասաց.
«Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ, որ ձեզանից մեկը պիտի մատ-
նի Ինձ»:
22 Աշակերտներն էլ իրար էին նա-
յում, տարակուսած, թե ու՞մ մասին
է ասում:
23 Արդ, Նրա աշակերտներից մեկը
Հիսուսի կրծքին էր փարվել, որին
Հիսուսը սիրում էր:
24 Սիմոն Պետրոսը նրան ակնարկ
արեց, որ հարցնի, թե դա ո՞վ պիտի
լինի, որի մասին ասում է:
25 Նա էլ, Հիսուսի կրծքին հենված,
ասաց Նրան. «Տե՛ր, ո՞վ է դա»:

26 Հիսուսը պատասխանեց. «Նա է,
ում այս պատառը թրջելով կտամ»:
Եվ երբ պատառը թաթախեց, Հուդա
Սիմոնի Իսկարիովտացուն տվեց:
27 Եվ պատառից հետո սատանան
մտավ նրա մեջ. և Հիսուսը նրան
ասաց. «Ինչ որ անելու ես՝ շուտով
արա»:
28 Սակայն, սեղան նստողներից ոչ
մեկը չիմացավ, թե ինչո՞ւ այսպես
ասաց նրան.
29 որովհետև ոմանք կարծեցին, թե
քանի որ Հուդան էր քսակը պահում,
Հիսուսը նրան ասաց. «Ինչ որ մեզ
այս տոնին պետք է, գնի՛ր», կամ, որ
նա մի բան տա աղքատներին:
30 Նա էլ պատառն առնելուն պես
դուրս գնաց. և գիշեր էր:
31 Եվ երբ նա դուրս գնաց, Հիսուսն
ասաց. «Հիմա Մարդու Որդին
փառավորվեց. և Աստված փառա-
վորվեց Նրանում:
32 Եթե Աստված Նրանում փառա-
վորվեց, Աստված էլ Նրան
կփառավորի Իր անձում. և շուտով
պիտի փառավորի Նրան:
33 Որդյակնե՛ր, դեռևս մի փոքր
ժամանակ էլ Ես ձեզ հետ եմ:
Դուք Ինձ պիտի որոնեք, և ինչպես
հրեաներին ասացի՝ Ուր Ես եմ
գնում, դուք չեք կարող գալ,- այն-
պես էլ հիմա ձե՛զ եմ ասում:
34 Նոր պատվիրան եմ տալիս ձեզ,
որ դուք միմյանց սիրեք. ինչպես
Ես ձեզ սիրեցի, դուք էլ նույնպես
միմյանց սիրեք:
35 Սրանով բոլոր մարդիկ պիտի
իմանան, թե դուք Իմ աշակերտ-
ներն եք, եթե դուք իրար համար սեր
ունենաք»:

## Հիսուսը Պետրոսի Ուրանալու Մասին Է Ասում

(Մատթ 26:31-35, Մարկ 14. 27-31,
Ղուկ 22:31-34)

36 Սիմոն Պետրոսը Նրան ասաց.
«Տեր, ու՞ր ես գնում». Հիսուսը պա-
տասխանեց նրան. «Ուր Ես գնում
եմ, դու հիմա չես կարող Իմ ետևից
գալ, բայց հետո Իմ ետևից կգաս»:
37 Պետրոսը Նրան ասաց. «Տե՛ր,
ի՞նչու չեմ կարող հիմա Քո ետևից
գալ. Ես իմ կյանքը Քեզ համար
վար կդնեմ»:
38 Հիսուսը պատասխանեց նրան.
«Քո կյանքը Ինձ համար վար կդ-
նե՞ս. ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
քեզ, որ աքաղաղը դեռ չկանչած,
դու երեք անգամ կուրանաս Ինձ:

## Ճանապարհը, Ճշմարտությունը Եվ Կյանքը

14 Թող ձեր սրտերը
չխռովվեն. Աստծու՛ն
հավատացեք, նույնպես
Ինձ հավատացեք:
2 Իմ Հոր տանը շատ բնակարան-

ներ կան. եթե այդպես չլիներ, Ես
ձեզ կասեի: Ես գնում եմ ձեզ հա-
մար տեղ պատրաստելու:
3 Եվ եթե գնամ և ձեզ համար տեղ
պատրաստեմ, դարձյալ կգամ և
ձեզ Ինձ մոտ կառնեմ, որպեսզի որ-
տեղ Ես եմ, դուք էլ այնտեղ լինեք:
4 Եվ ուր որ Ես գնում եմ, գիտեք և
ճանապարհը գիտեք»:
5 Թովմասը Նրան ասաց. «Տե՛ր,
մենք չգիտենք, թե ուր ես գնում.
և ի՞նչպես կարող ենք ճանապարհն
իմանալ»:
6 Հիսուսը նրան ասաց. «Ես եմ
ճանապարհը, ճշմարտությունը
և կյանքը. ոչ մեկը Հորը չի գա,
բացի Ինձանով:
7 Եթե դուք Ինձ գիտենայիք,
Իմ Հորն էլ պիտի գիտենայիք, և
այսուհետև դուք գիտեք Նրան և
տեսաք Նրան»:
8 Փիլիպպոսը Նրան ասաց. «Տե՛ր,
Հորը մեզ ցու՛յց տուր, և դա բավա-
կան է մեզ»:
9 Հիսուսը Նրան ասաց. «Այսքան
ժամանակ է ձեզ հետ եմ, և Ինձ
չճանաչեցի՞ր, Փիլիպպո՛ս. նա, որ
ինձ տեսավ, Հորը տեսավ, և դու
դեռ ինչպե՞ս ես ասում. «Հորը ցու՛յց
տուր մեզ»:
10 Չե՞ս հավատում, որ Ես Հոր
մեջ եմ, և Հայրը՝ Իմ մեջ. խոսքե-
րը, որ Ես խոսում եմ, Ինձանից չեմ
խոսում, այլ Հայրը, որ բնակվում է
Իմ մեջ, Նա է անում գործերը:
11 Հավատացե՛ք Ինձ, որ Ես Հոր
մեջ եմ, և Հայրն Իմ մեջ է, եթե ոչ,
հենց գործերի՛ համար հավատա-
ցեք Ինձ:
12 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ՝ նա, ով հավատում է Ինձ,
գործերը, որ Ես անում եմ՝ Ինքն էլ
պիտի անի, և դրանցից ավելի մեծ
գործեր պիտի անի, որովհետև Ես
Իմ Հոր մոտ եմ գնում:
13 Եվ ինչ որ դուք խնդրեք Իմ անու-
նով, Ես պիտի անեմ դա, որ Հայրը
փառավորվի Որդու մեջ:
14 Եթե դուք Իմ անունով մի բան
խնդրեք, Ես պիտի անեմ դա:
15 Եթե Ինձ սիրում եք, Իմ պատվի-
րանները պահեցե՛ք:

### Հիսուսը Խոստանում Է Սուրբ Հոգին Ուղարկել

16 Եվ Ես Հորը պիտի աղաչեմ, և
Նա ձեզ ուրիշ Մխիթարիչ պիտի
տա, որ ձեզ հետ մնա հավիտյան:
17 Ճշմարտության Հոգին, որին
աշխարհը չի կարող ընդունել,
քանի որ չի տեսնում Նրան և ո՛չ
էլ գիտի Նրան, բայց դուք գիտեք
Նրան, որովհետև Նա ձեզ հետ է
բնակվում և ձեր մեջ պիտի լինի:
18 Ես ձեզ որբ չեմ թողնի. կգամ
ձեզ մոտ:
19 Մի փոքր ժամանակ ևս, և
աշխարհն այլևս չի տեսնի Ինձ,
բայց դուք Ինձ կտեսնեք. որովհետև
Ես ապրում եմ, դուք նույնպես

պիտի ապրեք:
20 Այն օրը դուք պիտի իմանաք, որ Ես Իմ Հոր մեջ եմ, և դուք՝ Իմ մեջ, և Ես՝ ձեր մեջ:
21 Ով Իմ պատվիրաններն ու նի և պահում է դրանք, նա՛ է Ինձ սիրողը. և նա, ով սիրում է Ինձ, պիտի սիրվի Իմ Հոր կողմից, և Ես պիտի սիրեմ նրան և Ինձ պիտի հայտնեմ նրան»:
22 Հուդան ասաց Նրան (ոչ Իսկա-
րիովտացին). «Տե՛ր, այդ ինչպե՞ս է, որ Դու մե՛զ պիտի հայտնես քեզ և ոչ՝ աշխարհին»:
23 Հիսուսը պատասխանեց և ասաց նրան. «Եթե մեկն Ինձ սիրի, Իմ խոսքերը պիտի պահի. և Իմ Հայրը պիտի սիրի նրան, և Մենք նրան պիտի գանք և պիտի բնակենք նրա հետ:
24 Նա, ով Ինձ չի սիրում, Իմ խոսքերը չի պահում. և այն խոսքը, որ դուք լսում եք, Իմը չէ, այլ Հորը, որ Ինձ ուղարկեց:
25 Այս բաները խոսեցի ձեզ, քանի դեռ ձեզ հետ եմ:
26 Բայց Մխիթարիչը՝ Սուրբ Հոգին, որին Հայրը ուղարկելու է Իմ անունով, Նա պիտի ամեն բան սովորեցնի ձեզ և ձեր միտքը բերի այն ամենը, ինչ Ես ձեզ ասացի:
27 Խաղաղություն եմ թողնում ձեզ, Իմ խաղաղությունն եմ տալիս ձեզ. ոչ թե ինչպես աշխարհն է տալիս, Ես տալիս եմ ձեզ: Ձեր սիրտը թող չխռովվի, ո՛չ էլ վախենա:
28 Դուք լսեցիք, ինչպես ձեզ ասա ցի. «Ես գնում եմ և նորից կգամ ձեզ մոտ»: Եթե Ինձ սիրեիք, ուրախ պիտի լինեիք, որ ասացի, թե Ես Հոր մոտ եմ գնում, որովհետև Իմ Հայրը մեծ է, քան Ես:
29 Եվ Ես հիմա ասացի ձեզ՝ լինելուց առաջ, որ երբ դա լինի, հավատաք:
30 Այսուհետև Ես շատ պի տի չխոսեմ ձեզ հետ, որովհետև այս աշխարհի իշխանը գալիս է և Ինձանում ոչինչ չունի:
31 Սակայն, որպեսզի աշխարհն իմանա, թե Ես սիրում եմ Հորը, և ինչպես Հայրն Ինձ պատվեր տվեց, այնպես եմ անում: Վե՛ր կացեք, գնանք այստեղից»:

## Ճշմարիտ Որթը

15 «Ես եմ ճշմարիտ որթը, և իմ Հայրը մշակն է:
2 Ամեն մի ճյուղ, որ Ին-
ձանում է և պտուղ չի բերում, Նա կտրում է: Եվ ամեն մի ճյուղ, որ պտուղ է բերում, Նա զտում է այն, որ էլ ավելի պտղաբեր լինի:
3 Արդ, դուք մաքուր եք այն խոսքի միջոցով, որ Ես ձեզ խոսեցի:
4 Մնացե՛ք Իմ մեջ, և Ես ձեր մեջ: Ինչպես ճյուղը չի կարող ինքն իրենից պտուղ բերել, եթե որթի վրա չմնա, այնպես էլ դուք չեք կարող, եթե Իմ մեջ չմնաք:
5 Ես եմ որթը, դուք ճյուղերն եք:

Նա, որ մնում է Իմ մեջ և Ես նրա
մեջ, նա շատ պտուղ է բերում,
որովհետև առանց Ինձ դուք ոչինչ
չեք կարող անել:
6 Եթե մեկն Իմ մեջ չմնա, նա ճյուղի
պես դուրս կնետվի և կչորանա, և
մարդիկ կհավաքեն դրանք ու կրա-
կը կգցեն, ու նրանք կվառվեն:
7 Եթե դուք Իմ մեջ մնաք և Իմ
խոսքերը ձեր մեջ մնան, պիտի
խնդրեք ինչ որ կամենաք, և այն
պիտի լինի ձեզ:
8 Իմ Հայրը կփառավորվի դրանով,
որ դուք շատ պտուղ բերեք. այդպես
դուք Իմ աշակերտները կլինեք:
9 Ինչպես Իմ Հայրն Ինձ սիրեց,
այդպե՛ս Ես ձեզ սիրեցի. հա-
րատևե՛ք Իմ սիրո մեջ:
10 Եթե Իմ պատվիրանները
պահեք, Իմ սիրո մեջ պիտի մնաք,
ինչպես Ես Իմ Հոր պատվիրան-
ները պահեցի և մնում եմ Նրա
սիրո մեջ:
11 Այս բաները Ես ձեզ հետ խոսեցի,
որ Իմ ուրախությունը ձեր մեջ մնա,
և որ ձեր ուրախությունը լրիվ լինի:
12 Սա է Իմ պատվիրանը, որ դուք
միմյանց սիրեք, ինչպես Ես ձեզ
սիրեցի:
13 Ավելի մեծ սեր ոչ մեկը չունի,
քան սա, որ մարդ իր կյանքը դնի
իր բարեկամների համար:
14 Դուք Իմ բարեկամներն եք, եթե
անեք այն, ինչ Ես պատվիրում
եմ ձեզ:
15 Այսուհետև Ես ձեզ ծառաներ չեմ
կոչում, որովհետև ծառան չգիտի,
թե իր տերն ինչ է անում, այլ Ես ձեզ
բարեկամներ անվանեցի, որով-
հետև ամեն ինչ, որ Ես Իմ Հորից
լսեցի, ձեզ հայտնեցի:
16 Ոչ թե դուք Ինձ ընտրեցիք, այլ
Ե՛ս ընտրեցի ձեզ և ձեզ սահմանե-
ցի, որ դուք գնաք և պտուղ բերեք.
և որ ձեր պտուղը մնա, որպեսզի
ինչ որ դուք Իմ անունով խնդրեք
Հորից, Նա ձեզ տա:
17 Այս եմ պատվիրում ձեզ, որ դուք
միմյանց սիրեք:

## Աշխարհի Ատելությունը

18 Եթե աշխարհը ձեզ ատի, դուք
գիտեք, որ այն ձեզ ատելուց առաջ`
Ինձ ատեց:
19 Եթե աշխարհից լինեիք, աշխարհն
իրենը կսիրեր, բայց որովհետև
դուք աշխարհից չեք, այլ Ես ձեզ
աշխարհից դուրս ընտրեցի, դրա
համար աշխարհն ատում է ձեզ:
20 Հիշեցե՛ք այն խոսքը, որ Ես
ասացի ձեզ, թե ծառան իր
Տիրոջից մեծ չէ. եթե Ինձ
հալածեցին, ձեզ նույնպես պիտի
հալածեն, եթե Իմ խոսքը պահեցին,
ձերն էլ պիտի պահեն:
21 Բայց այս ամենը նրանք ձեզ
կանեն Իմ անվան համար,
որովհետև չճանաչեցին Նրան, ով
Ինձ ուղարկեց:
22 Եթե Ես եկած չլինեի և նրանց

հետ խոսած, նրանք մեղք չէին ու-
նենա, բայց հիմա արդարացում
չունեն իրենց մեղքի համար:
23 Ով ատում է Ինձ, նույնպես Իմ
Հորն է ատում:
24 Եթե Ես նրանց մեջ չանեի այն
գործերը, որ ուրիշ ոչ մի մարդ չա-
րեց, նրանք մեղք չէին ունենա, սա-
կայն հիմա նրանք թե՛ տեսան և թե՛
ատեցին Ի՛նձ էլ, Իմ Հո՛րն էլ:
25 Սակայն սա եղավ, որպեսզի
կատարվի այն խոսքը, որ իրենց
Օրենքում գրված է՝ «Առանց պատ-
ճառի Ինձ ատեցին»:
26 Բայց երբ Մխիթարիչը գա, որին
Ես Հորից ձեզ պիտի ուղարկեմ,
Ճշմարտության Հոգին, որը ելնում է
Հորից, Նա պիտի վկայի Ինձ
համար:
27 Եվ դուք նույնպես պիտի վկա-
յեք, որովհետև սկզբից նեք Ինձ
հետ եք եղել:

16 Այս բաները Ես ձեզ ասացի,
որպեսզի չգայթակղվեք:
2 Ձեզ իրենց ժողովարան-
ներից դուրս պիտի հանեն, այո,
ժամանակը գալիս է, որ ով ձեզ
սպանի, պիտի կարծի, թե Աստծուն
ծառայություն է մատուցանում:
3 Եվ այս բաները ձեզ պիտի
անեն, որովհետև նրանք Հորը
չճանաչեցին, և ո՛չ էլ Ինձ:
4 Բայց այս բաները Ես ձեզ ասացի,
որ երբ ժամանակը գա, դուք հիշեք,
թե Ես ձեզ ասացի դրանք: Եվ այս
բաները սկզբում չասացի ձեզ,
որովհետև Ես ձեզ հետ էի:

## Մխիթարիչի Գալուստը

5 Իսկ հիմա Ես գնում եմ Նրան,
ով Ինձ ուղարկեց, և ձեզանից ոչ
մեկը չի հարցնում Ինձ, թե՝ «Ու՞ր
ես գնում»:
6 Բայց որովհետև այս բաներն
ասացի ձեզ, տրտմությունը լցրեց
ձեր սրտերը:
7 Սակայն ճշմարտությունն եմ
ասում ձեզ. ձեր օգտին է, որ Ես
գնամ, որովհետև եթե չգնամ, Մխի-
թարիչը չի գա ձեզ, իսկ եթե գնամ,
Ես Նրան ձեզ պիտի ուղարկեմ:
8 Եվ երբ Նա գա, Նա աշխարհին
պիտի հանդիմանի մեղքի համար,
և արդարության համար և դատաս-
տանի համար:
9 Մեղքի համար, որովհետև Ինձ
չեն հավատում:
10 Արդարության համար, որով-
հետև Ես Իմ Հոր մոտ եմ գնում, և
Ինձ այլևս դուք չեք տեսնի:
11 Եվ դատաստանի համար,
որովհետև այս աշխարհի իշխանը
դատապարտված է:
12 Դեռևս շատ բաներ ունեմ
ձեզ ասելու, բայց դուք հիմա չեք
կարող տանել:
13 Սակայն, երբ Նա՝ ճշմարտու-
թյան Հոգին գա, Նա ձեզ ամեն
ճշմարտության կառաջնորդի,

որովհետև Նա Ինքն իրենից չի
խոսելու, այլ ինչ որ լսի, ա՛յն
պիտի խոսի և ձեզ պիտի ցույց
տա գալիք բաները:
14 Նա պիտի փառավորի Ինձ,
որովհետև Իմից պիտի վերցնի և
ձեզ պիտի հաղորդի:
15 Ամեն ինչ, որ Հայրն ունի՝ Իմն
է. դրա համար Ես ձեզ ասացի, թե
Նա Իմից պիտի վերցնի և ձեզ
պիտի հաղորդի:
16 Մի քիչ ժամանակ, և դուք Ինձ
չեք տեսնի. և դարձյալ մի քիչ՝ և
կտեսնեք Ինձ, որովհետև Ես Հոր
մոտ եմ գնում»:
17 Նրա աշակերտներից ոմանք
իրար ասում էին. «Ի՞նչ է սա, որ Նա
մեզ ասում է՝ «մի քիչ ժամանակ, և
դուք Ինձ չեք տեսնի. դարձյալ մի
քիչ՝ և կտեսնեք Ինձ. և՝ որովհետև
Ես Հոր մոտ եմ գնում»:
18 Եվ ասում էին. «Ի՞նչ է սա, որ Նա
ասում է՝ «Մի քիչ ժամանակ». չենք
հասկանում, թե ինչ է խոսում»:
19 Եվ Հիսուսն իմացավ, որ ուզում
էին հարցնել Իրեն, և ասաց նրանց.
«Դրա համա՞ր եք հարցնում իրար,
որ ասացի, թե՝ Մի քիչ ժամանակ, և
դուք Ինձ չեք տեսնի և դարձյալ մի
քիչ, և կտեսնեք Ինձ:
20 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
ձեզ, որ դուք պիտի լաք ու պիտի
ողբաք, իսկ աշխարհը պիտի ուրա-
խանա. դուք պիտի տրտմեք, բայց
ձեր տրտմությունը ուրախության
պիտի փոխվի:
21 Երբ կինը երկունքի մեջ է, տրտ-
մություն է ունենում, որովհետև նրա
ժամն հասել է. բայց երբ երեխան
ծնվում է, այլևս նեղությունը չի հիշ-
ում՝ ուրախությունից, որ մի մարդ
աշխարհ եկավ:
22 Եվ դուք էլ հիմա տրտմություն
ունեք, բայց նորից պիտի տեսնեմ
ձեզ, և ձեր սիրտը պիտի ուրա-
խանա, և ձեր ուրախությունը ոչ մե
կը պիտի չառնի ձեզանից:
23 Եվ այն օրը Ինձանից ոչ մի բան
չպիտի խնդրեք. ճշմարիտ, ճշմարիտ
եմ ասում ձեզ՝ ինչ որ խնդրեք Հորից
Իմ անունով, Նա ձեզ պիտի տա:
24 Մինչև հիմա դուք ոչինչ չխնդ-
րեցիք Իմ անունով. խնդրեցեք և
պիտի ստանաք, որ ձեր ուրախու-
թյունը կատարյալ լինի:
25 Այս բաները Ես ձեզ հետ առակ-
ներով խոսեցի, բայց ժամանա-
կը գալիս է, որ այլևս առակներով
չեմ խոսելու ձեզ հետ, այլ Ես
հայտնապես ձեզ ցույց կտամ Հորը:
26 Այն օրը դուք պիտի խնդրեք Իմ
անունով. և Ես չեմ ասում ձեզ, թե Ես
ձեզ համար պիտի աղաչեմ Հորը.
27 քանի որ Հայրն Ինքը սիրում է
ձեզ, որովհետև դուք Ինձ սիրեցիք և
հավատացիք, որ Ես Աստծուց ելա:
28 Հորից դուրս ելա և աշխարհ
եկա. դարձյալ թողնում եմ աշխար-
հը և գնում եմ Հոր մոտ»:
29 Նրա աշակերտներն ասացին
Նրան. «Ահա, հիմա բացահայ-
տորեն ես խոսում և ոչ մի առակ

չես ասում:
30 Հիմա իմացանք, որ Դու ամեն
ինչ գիտես և կարիք չունես, որ
որևէ մեկը Քեզ հարցնի. սրանով
հավատում ենք, թե Դու Աստծուց
դուրս եկար»:
31 Հիսուսը պատասխանեց նրանց.
«Դուք հիմա հավատու՞մ եք:
32 Ահա ժամանակը գալիս է, այո,
հիմա՛ եկել է, որ դուք պիտի ցրվեք,
ամեն մարդ իր համար, և Ինձ պիտի
մենակ թողնեք. բայց Ես մենակ չեմ,
որովհետև Իմ Հայրը Ինձ հետ է:
33 Այս բաները ձեզ հետ խոսեցի,
որ Իմ մեջ խաղաղություն ունենաք:
Աշխարհում նեղություն պիտի
ունենաք, բայց քաջասիրտ եղեք,
Ես աշխարհին հաղթեցի:

## Հիսուսն Աղոթում Է Աշակերտների Համար

17 Հիսուսն այս բաները խոսեց և Իր աչքերը դեպի երկինք բարձրացրեց ու ասաց. «Հայր, ժամը հասել է, փառավորի՛ր Քո Որդուն, որ Քո Որդին էլ Քեզ փառավորի.
2 ինչպես Նրան իշխանություն
տվիր ամեն մարմնի վրա, որ հավի-
տենական կյանք տա այն ամենին,
որ Դու տվեցիր Նրան:
3 Եվ սա է հավիտենական կյանքը,
որ ճանաչեն Քեզ՝ միակ ճշմարիտ
Աստծուն և Հիսուս Քրիստոսին,
Ում Դու ուղարկեցիր:
4 Ես Քեզ փառավորեցի երկրի
վրա, Ես կատարեցի այն գործը, որ
Դու Ինձ տվեցիր անելու.
5 Եվ հիմա, ո՛վ Հայր, Քեզանով
փառավորիր Ինձ՝ այն փառքով, որ
Ես ունեի Քեզ հետ՝ աշխարհի լինե-
լուց առաջ:
6 Ես Քո անունը հայտնեցի այն
մարդկանց, որոնց Դու աշխար-
հից Ինձ տվեցիր, Քոնն էին նրանք
և Ինձ տվեցիր. և նրանք Քո խոսքը
պահեցին:
7 Այժմ նրանք իմացան, որ այն
բոլոր բաները, ինչ Դու Ինձ
տվեցիր, Քեզանից են:
8 Որովհետև այն խոսքը, որ Դու
Ինձ տվիր, Ես նրանց տվեցի. և
նրանք ընդունեցին, և ճշմարտու-
թյամբ իմացան, որ Ես Քեզանից
դուրս եկա. և հավատացին, թե Դու
ուղարկեցիր Ինձ:
9 Ես աղաչում եմ նրանց համար.
Ես աշխարհի համար չեմ աղոթում,
այլ նրանց համար, որոնց Դու Ինձ
տվեցիր, որովհետև նրանք Քոնն են:
10 Եվ ինչ որ Իմն է, բոլորը Քոնն է. և
ինչ որ Քոնն է, Իմն է. և Ես փառա-
վորված եմ նրանց մեջ:
11 Եվ հիմա Ես այլևս աշխարհում
չեմ, բայց սրանք աշխարհում են. և
Ես Քեզ եմ գալիս: Ո՛վ սուրբ Հայր,
Քո անունով պահիր նրանց, որոնց
Դու Ինձ տվեցիր, որ նրանք մեկ
լինեն, ինչպես Մենք ենք:
12 Երբ Ես աշխարհում նրանց հետ

էի, Ես պահեցի նրանց Քո անու-
նով. նրանց, որ Դու Ինձ տվեցիր,
Ես պահեցի և նրանցից ոչ մեկը
կորած չէ, բացի կորստյան որդուց,
որ գրվածը կատարվի:
13 Եվ հիմա Քեզ եմ գալիս. և այս
բաները Ես խոսում եմ աշխար-
հում, որ նրանք Իմ ուրախությունը
իրենց մեջ կատարյալ ունենան:
14 Ես Քո խոսքը նրանց տվեցի, և
աշխարհը նրանց ատեց, որովհետև
նրանք աշխարհից չեն, ինչպես Ես
աշխարհից չեմ:
15 Ես չեմ աղոթում, որ Դու նրանց
աշխարհից դուրս վերցնես, այլ որ
Դու նրանց չարից պահես:
16 Նրանք աշխարհից չեն, ինչպես
Ես աշխարհից չեմ:
17 Սրբացրո՛ւ նրանց Քո ճշմարտու-
թյամբ. Քո խոսքը ճշմարտություն է:
18 Ինչպես Դու Ինձ ուղարկեցիր
աշխարհ, այդպես էլ Ես նրանց
աշխարհ ուղարկեցի:
19 Եվ Ես Իմ անձը սրբացնում եմ
նրանց համար, որպեսզի նրանք էլ
սրբանան ճշմարտության միջոցով:
20 Սակայն ոչ թե միայն սրանց
համար եմ աղոթում, այլ նաև նրանց
համար, ովքեր պիտի հավատան
Ինձ՝ սրանց խոսքի միջոցով,
21 որպեսզի ամենքը մեկ լինեն,
ինչպես Դու, Հա՛յր, Իմ մեջ ես և
Ես Քո մեջ, որ նրանք նույնպես
մեկ լինեն Մեր մեջ, որ աշխարհը
հավատա, թե Դու՛ Ինձ ուղարկեցիր:
22 Եվ այն փառքը, որ Դու Ինձ
տվիր, Ես նրանց տվեցի, որ մեկ
լինեն, ինչպես Մենք մեկ ենք.
23 Ես նրանց մեջ, և Դու՝ Իմ մեջ, որ
նրանք կատարյալ լինեն միության
մեջ. և, որպեսզի աշխարհն իմանա,
որ Դու՛ ուղարկեցիր Ինձ և սիրեցիր
նրանց, ինչպես Ինձ սիրեցիր:
24 Հա՛յր, Ես կամենում եմ, որ
նրանք էլ, ում Դու ինձ տվեցիր, Ինձ
հետ լինեն, ուր որ Ես եմ, որպեսզի
տեսնեն Իմ փառքը, որ Ինձ տվե-
ցիր. քանի որ Դու Ինձ աշխարհի
հիմնումից առաջ սիրեցիր:
25 Ո՛վ արդար Հայր, աշխարհը
չճանաչեց Քեզ, բայց Ես ճանաչեցի
Քեզ, և սրանք ճանաչեցին, որ Դու
ուղարկեցիր Ինձ:
26 Եվ Ես Քո անունը հայտնեցի
նրանց, և պիտի հայտնեմ այն, որ-
պեսզի այն սերը, որով Դու Ինձ
սիրեցիր, նրանց մեջ լինի, և Ես՝
նրանց մեջ»:

## Հիսուսի Ձերբակալությունը

(Մատթ 26:47-56, Մարկ 14:13-50, Ղուկ 22:47-53)

18 Հիսուսն այս բաներն
ասելուց հետո Իր
աշակերտների հետ դուրս
գնաց Կեդրոն հեղեղատի մյուս
կողմը, որտեղ մի պարտեզ կար, ուր
մտան Ինքն ու Իր աշակերտները:
2 Եվ Հուդան, որ Նրան մատ-
նելու էր, նույնպես գիտեր այդ
տեղը, որովհետև Հիսուսը և Իր

աշակերտները շատ անգամ
այնտեղ էին հավաքվել:
3 Հուդան, ապա, գլխավոր քա-
հանաներից ու փարիսեցիներից
զինվորների գունդ ու սպասա-
վորներ առնելով, այնտեղ եկավ
լապտերներով, ջահերով և զենքերով:
4 Հիսուսը, սակայն, իմանալով բո-
լոր բաները, որ պիտի գան Իր վրա,
առաջ գնաց ու ասաց նրանց. «Ու՞մ
եք դուք փնտրում»:
5 Պատասխանեցին Նրան. «Հիսուս
Նազովրեցուն». Հիսուսը նրանց
ասաց. «Ես եմ»: Հուդան էլ, որ
Նրան պիտի մատներ, կանգնած էր
նրանց հետ:
6 Հենց որ ասաց նրանց՝ «Ես
եմ», նրանք ետ-ետ գնացին և
գետին ընկան:
7 Ապա դարձյալ հարցրեց նրանց.
«Ու՞մ եք դուք փնտրում»: Եվ նրանք
ասացին. «Հիսուս Նազովրեցուն»:
8 Հիսուսը պատասխանեց. «Ձեզ
ասացի, թե՝ Ես եմ: Արդ, եթե Ինձ եք
ուզում, թողեք նրանց, որ գնան»,
9 որ կատարվի այն խոսքը, որ Նա
ասել էր, թե՝ «Նրանցից, որոնց Դու
Ինձ տվեցիր, ոչ մեկին Ես չկորցրի»:
10 Իսկ Սիմոն Պետրոսը, որ սուր
ուներ, քաշեց այն և քահանայա-
պետի ծառային զարկեց և նրա աջ
ականջը կտրեց: Ծառայի անունը
Մաղքոս էր:
11 Հիսուսն էլ ասաց Պետրոսին.
«Սուրդ պատյանը դի՛ր. այն բա-
ժակը, որ Իմ Հայրն Ինձ տվեց, Ես
պիտի չխմե՞մ»:
12 Ապա զորախումբը և հազարա-
պետը և հրեաների ծառայողները
Հիսուսին բռնեցին և կապեցին Նրան,
13 և նախ՝ Նրան Աննայի մոտ տա-
րան, որովհետև նա Կայիափա-
յի՝ այդ տարվա քահանայապետի
աներն էր:
14 Արդ Կայիափան դա էր, որ
հրեաներին խորհուրդ տվեց, թե
լավ է, որ մի մարդ մեռնի ժողովրդի
համար:

## Պետրոսը Ուրանում Է Հիսուսին

15 Եվ Սիմոն Պետրոսը գնում էր
Հիսուսի ետևից, նույնպես և մյուս
աշակերտը: Այդ աշակերտը, քանի
որ ծանոթ էր քահանայապետին,
Հիսուսի հետ քահանայապետի
գավիթը մտավ:
16 Իսկ Պետրոսը դուրսը՝ դռան մոտ
կանգնած էր. այն մյուս աշակեր-
տը, որ քահանայապետին ծանոթ
էր, դուրս եկավ, խոսեց դռնապանի
հետ և Պետրոսին ներս մտցրեց:
17 Եվ աղջիկը, որ դռնապանն էր,
Պետրոսին ասաց. «Դու նույնպես
այս մարդու աշակերտներից մեկը
չե՞ս»: Եվ նա ասաց. «Ո՛չ, չեմ»:
18 Ծառաներն ու պաշտոնյաները
կանգնել էին այնտեղ, ածուխով
կրակ վառած տաքանում էին,
որովհետև ցուրտ էր: Պետրոսն էլ
նրանց հետ կանգնած էր և տաքա-
նում էր:

## Քահանայապետը Հարցաքննում Է Հիսուսին

19 Եվ քահանայապետը հարց տվեց
Հիսուսին՝ Նրա աշակերտների և
Նրա վարդապետության մասին:
20 Հիսուսը պատասխանեց նրան.
«Ես հայտնապես խոսեցի աշխար-
հին, Ես միշտ ժողովարանում և
տաճարի մեջ էի ուսուցանում, որ-
տեղ հրեաները միշտ հավաքվում
են, և գաղտնի ոչինչ չեմ խոսել:
21 Ի՞նչու ես Ինձ հարցնում, լսող-
ներին հարցրու, թե Ես ի՞նչ խոսեցի
նրանց, ահա նրանք գիտեն, թե Ես
ինչ եմ ասել»:
22 Երբ Նա այս ասաց, պաշտոնյա-
ներից մեկը, որ այնտեղ կանգնած
էր, Հիսուսին մի ապտակ տվեց և
ասաց. «Այդպե՞ս ես պատասխա-
նում քահանայապետին»:
23 Հիսուսը նրան պատասխանեց.
«Եթե չար խոսեցի, վկայիր այդ չա
րի մասին, բայց եթե բարի՝ ինչու՞ ես
խփում Ինձ»:
24 Եվ Աննան Նրան կապած
ուղարկեց Կայիափա քահանայա-
պետի մոտ:

## Պետրոսը Նորից Է Ուրանում

25 Եվ Սիմոն Պետրոսը կանգնած
տաքանում էր: Նրան ասացին. «Դու
էլ Նրա աշակերտներից մեկը չե՞ս»:
Նա ուրացավ դա և ասաց. «Չեմ»:
26 Եվ քահանայապետի ծառանե-
րից մեկը, որ ազգական էր նրան,
ում ականջը Պետրոսը կտրել էր,
ասաց. «Չէ՞ որ ես քեզ այն պարտե-
զում Նրա հետ տեսա»:
27 Եվ Պետրոսը դարձյալ ուրացավ,
և շուտով աքաղաղը կանչեց:

## Հիսուսը Պիղատոսի Առջև

28 Ապա նրանք Հիսուսին Կայիա-
փայի մոտից կուսակալի պալատը
տարան, և առավոտ էր. և իրենք
դատարանի սրահի մեջ չմտան, որ-
պեսզի չպղծվեն, այլ կարողանան
զատիկն ուտել:
29 Ուստի Պիղատոսը դուրս ելավ
նրանց մոտ և ասաց. «Այս մարդու
դեմ ի՞նչ մեղադրանք ունեք»:
30 Նրանք պատասխանեցին և
ասացին նրան. «Եթե Նա չարա-
գործ չլիներ, մենք քո ձեռքը չէինք
մատնի Նրան»:
31 Պիղատոսն էլ նրանց ասաց.
«Դուք առեք և ձեր Օրենքի համա-
ձայն դատեցեք Նրան»: Հրեաներն
էլ նրան ասացին. «Մեզ համար
օրինավոր չէ որևէ մարդու մահա-
պատժի ենթարկել».
32 որպեսզի կատարվի Հիսուսի
խոսքը, որ Նա ասաց, ցույց տալով,
թե ինչպիսի մահով է մեռնելու Ինքը:
33 Ապա Պիղատոսը նորից դատա-
րանի սրահը մտավ և Հիսուսին
կանչեց ու Նրան ասաց. «Դու հրե-

աների թագավո՞րն ես»:
34 Հիսուսը նրան պատասխանեց. «Դու քեզանի՞ց ես դա ասում, թե՞ ուրիշներն ասացին քեզ Իմ մասին»:
35 Պիղատոսը պատասխանեց. «Մի՞թե ես հրեա եմ. Քո ազգը և գլխավոր քահանաները Քեզ իմ ձեռքը մատնեցին. Դու ի՞նչ ես արել»:
36 Հիսուսը պատասխանեց. «Իմ թագավորությունն այս աշխարհից չէ. եթե Իմ թագավորությունն այս աշխարհից լիներ, ապա Իմ ծառաները կկռվեին, որ Ես հրեաների ձեռքը չմատնվեմ, բայց հիմա Իմ թագավորությունն այս տեղից չէ»:
37 Ուստի Պիղատոսն ասաց Նրան. «Ուրեմն Դու թագավո՞ր ես»: Հիսուսը պատասխանեց. «Դու ասում ես, թե Ես թագավոր եմ: Ես այս նպատակի համար եմ ծնվել և այս պատճառով եմ եկել աշխարհ, որ ճշմարտությունը վկայեմ: Ամեն մեկը, որ ճշմարտությունից է, լսում է Իմ ձայնը»:

## Հիսուսը Մահվան Է Դատապարտվում

38 Պիղատոսը Նրան ասաց. «Ի՞նչ է ճշմարտությունը»: Եվ սա ասելով՝ դարձյալ դուրս գնաց հրեաների մոտ և նրանց ասաց. «Ես բոլորովին, ոչ մի հանցանք չեմ գտնում Նրա մեջ:
39 Բայց դուք սովորություն ունեք, որ Զատկին մի մարդ ազատ արձակեմ ձեզ համար. ուստի կկամենա՞ք, որ հրեաների թագավորին արձակեմ ձեզ համար»:
40 Այն ժամանակ նրանք բոլորը նորից աղաղակեցին և ասում էին. «Ո՛չ այդ մարդուն, այլ՝ Բարաբբային»: Իսկ Բարաբբան մի ավազակ էր:

19 Այն ժամանակ Պիղատոսը Հիսուսին վերցրեց ու գանակոծեց Նրան:
2 Եվ զինվորները փշերից պսակ հյուսեցին, դրին Նրա գլխին և ծիրանի հանդերձ հագցրին Նրան:
3 Եվ ասում էին. «Ողջո՛ւյն Քեզ, ո՛վ հրեաների թագավոր», և ապտակներ էին տալիս Նրան:
4 Ապա Պիղատոսը դարձյալ դուրս գնաց և ասաց նրանց. «Ահա, Նրան դուրս եմ բերում ձեզ մոտ, որ իմանաք, թե ես Նրա մեջ ոչ մի հանցանք չեմ գտնում»:
5 Եվ Հիսուսը դուրս եկավ փշեղեն պսակով և ծիրանի հանդերձն հագած. և Պիղատոսը նրանց ասաց. «Ահա՛, մարդը»:
6 Երբ գլխավոր քահանաները և պաշտոնյաները Նրան տեսան, աղաղակեցին, ասելով՝ «Խաչի՛ր Նրան, խաչի՛ր Նրան»: Պիղատոսն ասաց նրանց. «Դո՛ւք վերցրեք Նրան ու ինքներդ խաչեցեք, քանի որ ես Նրա մեջ ո՛չ մի հանցանք չեմ գտնում»:

7 Հրեաները պատասխանեցին
նրան. «Մենք Օրենք ունենք, և մեր
Օրենքի համաձայն, Նա պետք է
մեռնի, որովհետև Նա Ինքն իրեն
Աստծո Որդի դարձրեց»:
8 Երբ Պիղատոսն այս խոսքը լսեց,
է՛լ ավելի վախեցավ:
9 Եվ դարձյալ դատաստանի սրա-
հը մտավ, և Հիսուսին ասաց. «Դու
որտեղի՞ց ես». և Հիսուսը չպատաս-
խանեց նրան:
10 Ապա Պիղատոսը Նրան ասաց.
«Դու ինձ հետ չե՞ս խոսում. մի՞թե
չգիտես, որ ես իշխանություն ունեմ
Քեզ խաչը հանելու և իշխանություն
ունեմ Քեզ ազատ արձակելու»:
11 Հիսուսը պատասխանեց. «Դու
ոչ մի իշխանություն չէիր ունենա
Իմ վրա, եթե վերևից տրված չլիներ
քեզ. դրա համար նա, ով Ինձ քո
ձեռքը մատնեց, նրա մեղքն ավելի
մեծ է»:
12 Եվ դրանից հետո Պիղատոսը
փորձում էր Նրան ազատ արձա-
կել, իսկ հրեաներն աղաղակում
էին՝ ասելով. «Եթե այդ մարդուն
թողնես, որ գնա, դու կայսրի բա-
րեկամը չես. ո՛վ իրեն թագավոր է
կոչում, նա կայսրին դեմ է խոսում»:
13 Երբ Պիղատոսն այս խոսքերը
լսեց, Հիսուսին դուրս բերեց և
ինքը դատաստանի աթոռին նստեց
Քարահատակ կոչված տեղում,
եբրայերեն՝ Կապպաթա:
14 Եվ Զատկի նախօրեն էր՝ մոտ
վեցերորդ ժամը. և նա ասաց հրեա-
ներին. «Ահա, ձեր թագավորը»:
15 Իսկ նրանք աղաղակեցին. «Թող
կորչի՛, թող կորչի՛, խաչի՛ր Նրան»:
Պիղատոսն ասաց նրանց. «Ես
ձեր թագավորին խաչե՞մ»:
Գլխավոր քահանաները պա-
տասխանեցին. «Մենք թագավոր
չունենք՝ կեսարից բացի»:
16 Այն ժամանակ նրանց ձեռքը
տվեց Նրան, որ խաչը հանվի: Եվ
նրանք առան Հիսուսին և տարան:

## Հիսուսի Խաչելությունը

17 Եվ Նա, Իր խաչը կրելով, գնաց
դեպի Գանգ ասված տեղը, որ
եբրայերեն Գողգոթա է կոչվում:
18 Այնտեղ նրանք խաչը հանեցին
Նրան. և Նրա հետ ուրիշ երկուսին՝
Նրա երկու կողմերում և Հիսուսին՝
մեջտեղում:
19 Եվ Պիղատոսը մի տախ-
տակ գրեց և խաչի վրա դրեց: Եվ
գրված էր. «Հիսուս Նազովրեցի՝
հրեաների թագավոր»:
20 Այս տախտակը հրեաներից
շատերը կարդացին, որովհետև
այն տեղը, որտեղ Հիսուսը խաչվեց,
քաղաքին մոտ էր. և գրված էր
եբրայերեն, հունարեն և լատիներեն:
21 Այն ժամանակ հրեաների
գլխավոր քահանաներն ասացին
Պիղատոսին. «Մի՛ գրիր՝ հրեանե-
րի թագավոր, այլ՝ որ Նա ասաց. Ես
հրեաների թագավորն եմ»:

22 Պիղատոսը պատասխանեց՝ «Ինչ
որ գրեցի՝ գրեցի»:
23 Իսկ զինվորները, երբ որ Հիսու-
սին խաչը հանեցին, Նրա հան-
դերձները վերցրին և չորս բաժին
արին, ամեն մեկ զինվորի համար
մի բաժին, նույնպես և պատմուճա-
նը. սակայն պատմուճանը առանց
կարի էր, վերևից ներքև հյուսված:
24 Ուստի իրար ասացին. «Սա
չպատռենք, այլ վիճակ գցենք
դրա վրա, թե ումը լինի». որպեսզի
Գիրքը կատարվի, որ ասում է՝ «Իմ
հանդերձներն իրենց մեջ բաժա-
նեցին և Իմ պատմուճանի վրա
վիճակ գցեցին»: Արդ, զինվորներն
արին այս բաները:
25 Եվ Հիսուսի խաչի մոտ կանգ-
նած էին Նրա մայրը և Նրա մոր
քույրը՝ Մարիամը, Կղեովպասի
կինը, և Մարիամ Մագդաղենացին:
26 Երբ Հիսուսը տեսավ Իր մորը և
այն աշակերտին, ում սիրում էր՝
մոտը կանգնած, ասաց Իր մորը.
«Ո՛վ կին, ահա՛ քո որդին»:
27 Հետո Նա ասաց աշակերտին.
«Ահա՛ քո մայրը»: Եվ այն ժամա-
նակից այն աշակերտը նրան իր
մոտն առավ:

## Հիսուսի Մահը

28 Սրանից հետո, Հիսուսն իմանա-
լով, որ ամեն բան արդեն լրացած
է, որպեսզի գրվածը կատարվի,
ասաց. «Ծարավ եմ»:
29 Եվ քացախով լի մի աման կար,
և նրանք սպունգը քացախով լցրին
և զոպայի վրա դրած Նրա բերա-
նին մոտեցրին:
30 Եվ երբ Հիսուսը քացախն առավ,
ասաց. «Կատարվեց». և Նա գլուխը
խոնարհեց ու հոգին ավանդեց:
31 Բայց հրեաները, որովհետև
Պատրաստության օր էր, որպեսզի
մարմինները խաչի վրա չմնան
շաբաթ օրը (որովհետև այն շա-
բաթը մեծ օր էր) Պիղատոսին
աղաչեցին, որ նրանց սրունքները
կոտրեն և վերցնեն նրանց:
32 Ապա զինվորները եկան, և
առաջինի սրունքները կոտրեցին,
նույնպես և՝ մյուսինը, որ Նրա հետ
խաչված էր:
33 Բայց երբ Հիսուսի մոտ եկան,
տեսան, որ Նա արդեն մեռած է,
Նրա սրունքները չկոտրեցին:
34 Այլ զինվորներից մեկը նիզակով
Նրա կողը խոցեց և անմիջապես
արյուն և ջուր դուրս եկավ:
35 Եվ նա, որ այս տեսավ, վկայեց,
և նրա վկայությունը ճշմարիտ է. և
ինքը գիտի, որ ճշմարիտ է ասում,
որպեսզի դուք հավատաք,
36 որովհետև այս բաները եղան,
որ գրվածը կատարվի, թե՝ «Նրա
ոսկորը պիտի չկոտրվի»:
37 Եվ դարձյալ՝ մի ուրիշ գրված
ասում է. «Նրանք պիտի նայեն
Նրան, Ում իրենք խոցեցին»:

## Հիսուսի Թաղումը

38 Եվ սրանից հետո Հովսեփ Արի-
մաթիացին, Հիսուսի աշակերտը
լինելով, բայց գաղտնի՝ հրեաների
վախի պատճառով, Պիղատոսին
խնդրեց, որ ինքը Հիսուսի մար-
մինը վերցնի. և Պիղատոսը նրան
հրաման տվեց: Ուստի նա եկավ և
Հիսուսի մարմինը վերցրեց:
39 Եվ Նիկոդեմոսը նույնպես եկավ,
որ սկզբում Հիսուսի մոտ էր եկել
գիշերով, և զմուռսի ու հալվեի
խառնուրդ բերեց՝ մոտ հարյուր
լիտրի չափ:
40 Ապա նրանք Հիսուսի մարմինը
վերցրին և այն խնկերով
կտավների մեջ փաթաթեցին,
ինչպես հրեաների սովորությունն
էր թաղման համար:
41 Եվ այնտեղ, որտեղ Նա խաչվեց,
մի պարտեզ կար, և պարտեզի մեջ
մի նոր գերեզման, որի մեջ երբեք
մարդ չէր դրված:
42 Հրեաների Պատրաստության օր
վա պատճառով, Հիսուսին այնտեղ
դրին, քանի որ գերեզմանը մոտ էր:

## Հիսուսի Հարությունը

20 Եվ շաբաթվա առաջին
օրը Մարիամ Մագդա-
ղենացին առավոտյան
վաղ, երբ դեռ մութ էր, գալիս է
գերեզման և տեսնում, որ քարը
վերցված է գերեզմանից:
2 Ապա նա վազում է և գալիս
Սիմոն Պետրոսի և մյուս աշակեր-
տի մոտ, ում Հիսուսը սիրում էր
և ասում նրանց. «Տիրոջը գերեզմա-
նից վերցրել են, և չգիտենք, թե ուր
են դրել Նրան»:
3 Ուստի Պետրոսը և մյուս
աշակերտը ելան ու դեպի
գերեզմանը գնացին:
4 Եվ երկուսով միասին վազում
էին. և մյուս աշակերտը վազելով
անցավ Պետրոսին և առաջինը
գերեզման հասավ:
5 Եվ վար կռանալով ու ներս նայե-
լով՝ տեսավ, որ կտավներն այնտեղ
էին, սակայն ինքը ներս չմտավ:
6 Սիմոն Պետրոսն էլ հասավ, որ
նրա ետևից գալիս էր, ու գերեզմա-
նի մեջ մտավ և տեսավ կտավները՝
այնտեղ դրված,
7 և վարշամակը, որ Նրա գլխի
շուրջն էր, մյուս կտավների հետ
չէր, այլ առանձին ծալված մի կողմ
էր դրված:
8 Այն ժամանակ մյուս աշակերտն
էլ ներս մտավ, նա, որ առաջինն
էր գերեզման եկել, տեսավ և
հավատաց:
9 Որովհետև նրանք դեռ Գիրքը
չգիտեին, թե Նա պետք է մեռելնե-
րից հարություն առնի:
10 Ապա աշակերտները նորից
տուն գնացին:

## Հիսուսը Երևում Է Մարիամ Մագդաղենացուն

11 Բայց Մարիամը, գերեզմանի
դուրսը կանգնած, լաց էր լինում. և
լաց լինելով՝ կռացավ ու գերեզմա-
նի մեջ նայեց,
12 և տեսավ երկու հրեշտակ՝ սպի-
տակների մեջ, որ նստել էին, մեկը՝
գլխի կողմում, և մյուսը՝ ոտների, որ-
տեղ որ Հիսուսի մարմինն էր դրված:
13 Եվ նրանք ասացին նրան. «Ո՛վ
կին, ինչու՞ ես լալիս»: Նա ասաց
նրանց. «Որովհետև իմ Տիրոջը
վերցրել են, և չգիտեմ, թե ու՞ր են
դրել Նրան»:
14 Եվ երբ այս ասաց, ետ դարձավ և
տեսավ Հիսուսին կանգնած, և չգի-
տեր, թե դա Հիսուսն է:
15 Հիսուսը նրան ասաց. «Ով կին,
ինչու՞ ես լալիս: Ու՞մ ես որոնում»:
Նա էլ, կարծելով, թե պարտիզ-
պանն է, ասաց Նրան. «Տե՛ր, եթե
դու ես վերցրել Նրան, ասա ինձ, թե
ու՞ր ես դրել, որ ես վերցնեմ Նրան»:
16 Հիսուսը նրան ասաց՝ «Մարի-
ա՛մ»: Նա շրջվեց և ասաց Նրան՝
«Ռաբբունի», որ թարգմանվում
է վարդապետ:
17 Հիսուսը նրան ասաց. «Մի՛
դիպչիր Ինձ, որովհետև դեռ չեմ
համբարձել Իմ Հոր մոտ, բայց գնա
Իմ եղբայրների մոտ և ասա նրանց.
«Ես բարձրանում եմ Իմ Հոր մոտ և
ձեր Հոր մոտ, Իմ Աստծո մոտ և ձեր
Աստծո մոտ»:
18 Մարիամ Մագդաղենացին եկավ
և աշակերտներին ասաց, թե ինքը
տեսավ Տիրոջը, և թե՝ Նա այս
բաներն իրեն ասաց:

## Հիսուսը Երևում Է Աշակերտներին

19 Եվ նույն օրը երեկոյան, շա-
բաթվա առաջին օրը լինելով, երբ
դռները (ուր աշակերտներն էին
հավաքվել) փակված էին հրեանե-
րի վախից, Հիսուսը եկավ, նրանց
մեջ կանգնեց և ասաց նրանց.
«Խաղաղությու՛ն ձեզ»:
20 Եվ այս ասելով՝ Իր ձեռքերն ու
Իր կողը ցույց տվեց նրանց: Եվ
աշակերտներն ուրախացան, երբ
Տիրոջը տեսան:
21 Հիսուսը նորից նրանց ասաց.
«Խաղաղությու՛ն ձեզ, ինչպես Իմ
Հայրն Ինձ ուղարկեց, այդպես էլ
Ես ձեզ եմ ուղարկում»:
22 Եվ այս ասելով՝ փչեց նրանց
վրա և ասաց. «Առե՛ք Սուրբ Հոգին:
23 Ում մեղքերը դուք ներեք՝ ներված
կլինեն նրանց, և ում մեղքերը դուք
պահեք, կպահվեն»:

## Թովմասի Անհավատությունը

24 Բայց Թովմասը՝ տասներկու-
սից մեկը (Երկվորյակ կոչվածը),
նրանց հետ չէր, երբ Հիսուսը եկավ:

25 Ուստի մյուս աշակերտները նրան ասացին. «Մենք Տիրոջը տեսանք»: Բայց նա ասաց նրանց. «Եթե Նրա ձեռքերին մեխերի նշանները չտեսնեմ, և իմ մատը մեխերի նշանների մեջ չդնեմ, և իմ ձեռքը Նրա կողի մեջ չխրեմ, ես չեմ հավատա»:

26 Եվ ութ օրից հետո Նրա աշակերտները դարձյալ ներսում էին, և Թովմասն էլ՝ նրանց հետ: Այն ժամանակ Հիսուսը եկավ, թեև դռները փակ էին, նրանց մեջտեղում կանգնեց և ասաց. «Խաղաղություն ձեզ»:

27 Հետո Թովմասին ասաց. «Մատդ բեր այստեղ և ահա՝ տե՛ս Իմ ձեռքերը. և ձեռքդ երկարի՛ր և Իմ կողի մեջ մտցրու. և անհավատ մի՛ լինի, այլ՝ հավատացյալ»:

28 Եվ Թովմասը պատասխանեց և Նրան ասաց. «Իմ Տե՛ր և Իմ Աստվա՛ծ»:

29 Հիսուսը նրան ասաց. «Թովմա՛ս, որովհետև դու Ինձ տեսար՝ հավատացիր. երանի նրանց, որ չեն տեսել, բայց կհավատան»:

30 Իրոք, Հիսուսը ուրիշ շատ նշաններ էլ արեց Իր աշակերտների առջև, որոնք այս գրքում գրված չեն,

31 բայց սրանք գրվեցին, որ դուք հավատաք, թե Հիսուսը Քրիստոսն է, Աստծո Որդին, և հավատալով՝ կյանք ունենաք Նրա անունով:

## Հիսուսը Երևում Է Աշակերտներին Գալիլիայում

21 Սրանից հետո Հիսուսը նորից Իրեն հայտնեց Իր աշակերտներին Տիբերիայի ծովեզրին. և այսպես Նա հայտնեց Իրեն:

2 Միասին էին Սիմոն Պետրոսը, Երկվորյակ անվանված Թովմասը և Նաթանայելը, որ Գալիլիայի Կանայից էր, և Զեբեդեոսի որդիները և Նրա աշակերտներից ուրիշ երկուսը:

3 Սիմոն Պետրոսը նրանց ասաց. «Ես գնում եմ ձուկ որսալու»: Նրանք ասացին նրան. «Մենք էլ կգանք քեզ հետ»: Գնացին և շուտով նավը մտան. և այդ գիշեր նրանք ոչինչ չբռնեցին:

4 Սակայն, երբ առավոտը բացվեց, Հիսուսը ծովեզրին կանգնած էր, բայց աշակերտները չիմացան, թե դա Հիսուսն է:

5 Իսկ Հիսուսը նրանց ասաց. «Երեխեք, ուտելու բան ունե՞ք»: Նրանք պատասխանեցին Նրան՝ «Ո՛չ»:

6 Եվ Նա ասաց նրանց. «Ուռկանը նավի աջ կողմը գցեք և կգտնեք»: Նրանք էլ գցեցին և հիմա՝ ձկների բազմությունից չէին կարողանում դուրս քաշել այն:

7 Այն աշակերտը, որին Հիսուսը սիրում էր, Պետրոսին ասաց. «Դա Տերն է»: Իսկ Սիմոն Պետրոսը, երբ լսեց, թե Տերն է, իր ձկնորսական

հագուստը վրան փաքաթեց, որով-
հետև մերկ էր, և իրեն ծովը նետեց:
8 Իսկ մյուս աշակերտները նա-
վակով եկան (քանի որ ցամաքից
հեռու չէին, միայն՝ երկու հար-
յուր կանգունի չափ)՝ ձկներով լի
ուռկանը քաշելով:
9 Երբ ցամաք ելան, այնտեղ ածու-
խով կրակ տեսան, վրան ձուկ դր
ված, և հաց:
10 Հիսուսը նրանց ասաց. «Բե
րե՛ք այդ ձկներից, որ դուք հիմա
բռնեցիք»:
11 Սիմոն Պետրոսը ելավ և
ուռկանը ցամաք քաշեց՝ մեծ-մեծ
ձկներով լի, հարյուր հիսուներեք
հատ. ու թեև այդքան շատ կար,
ուռկանը չպատռվեց:
12 Հիսուսը նրանց ասաց. «Եկե՛ք,
կերե՛ք»: Եվ աշակերտներից ոչ ոք
չէր համարձակվում հարցնել, թե՝
դու ո՞վ ես, որովհետև գիտեին, որ
Տերն է:
13 Հիսուսն էլ եկավ, հացն առավ ու
նրանց տվեց, նույնպես և՝ ձուկը:
14 Սա երրորդ անգամն էր, որ
Հիսուսը Իր աշակերտներին
երևաց՝ մեռելներից հարություն
առնելուց հետո:

## Հիսուսը Եվ Պետրոսը

15 Եվ երբ նրանք ճաշեցին, Հիսուսն
ասաց Սիմոն Պետրոսին. «Սիմո՛ն,
Հովնանի՛ որդի, դու Ինձ սիրու՞մ
ես դրանցից ավելի»: Նա ասաց
Նրան. «Այո՛, Տե՛ր, Դու գիտես, որ ես
սիրում եմ Քեզ»: Նա ասաց նրան.
«Արածեցրո՛ւ Իմ գառներին»:
16 Նա դարձյալ ասաց նրան՝ երկ-
րորդ անգամ. «Սիմո՛ն, Հովնանի՛
որդի, սիրու՞մ ես Ինձ»: Նա ասաց
նրան. «Այո, Տե՛ր, Դու գիտես, որ ես
սիրում եմ Քեզ»: Նա նրան ասաց.
«Արածեցրո՛ւ, Իմ ոչխարներին»:
17 Նա երրորդ անգամ ասաց նրան.
«Սիմո՛ն, Հովնանի որդի, սիրու՞մ
ես Ինձ»: Պետրոսը տրտմեց, որով-
հետև երրորդ անգամ նրան ասաց,
թե՝ «Սիրու՞մ ես Ինձ»: Եվ ասաց
Նրան. «Տե՛ր, Դու ամեն բան գի
տես, Դու գիտես, որ ես սիրում եմ
Քեզ»: Հիսուսը նրան ասաց. «Արա-
ծեցրո՛ւ Իմ ոչխարներին:
18 Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում
քեզ, երբ դու երիտասարդ էիր, ինքդ
էիր գոտիդ կապում և գնում էիր՝ ուր
ուզենայիր, բայց, երբ ծերանաս,
ձեռքերդ պիտի մեկնես, և ուրիշը
գոտի պիտի կապի և քեզ տանի՝ ուր
չես ուզում»:
19 Այս ասաց՝ ցույց տալու, թե ինչ-
պիսի մահով նա պիտի փառավո-
րի Աստծուն: Եվ սա ասելուց հետո,
ասաց նրան՝ «Ի՛նձ հետևիր»:
20 Ապա Պետրոսը ետ դառնալով՝
տեսավ, որ այն աշակերտը, ում
Հիսուսը սիրում էր, ետևից գալիս
է (նա, որ ընթրիքի ժամանակ Նրա
կրծքովն էր ընկել ու ասել. «Տե՛ր,
ո՞վ է, որ Քեզ պիտի մատնի»):

21 Պետրոսը նրան տեսնելով, Հի-
սուսին ասաց. «Տե՛ր, իսկ այս
մարդն ի՞նչ պիտի անի»:
22 Հիսուսը նրան ասաց. «Եթե կա-
մենում եմ, որ նա մնա, մինչև Ես եւո
գամ, քեզ ի՞նչ, դու Ինձ հետևիր»:
23 Եվ այս խոսքը տարածվեց
եղբայրների մեջ, թե այդ աշակեր-
տը պիտի չմեռնի. սակայն Հիսուսը
նրան չասաց, թե նա պիտի չմեռնի,
այլ՝ «Եթե Ես կամենում եմ, որ նա
մնա մինչև Ես եւո գամ, քեզ ի՞նչ»:
24 Սա այն աշակերտն է, որ այս
բաների մասին վկայում է, և այս
բաները գրեց, և մենք գիտենք, որ
նրա վկայությունը ճշմարիտ է:
25 Եվ նույնպես ուրիշ շատ բաներ
կան, որ Հիսուսն արեց, որոնք եթե
մեկ առ մեկ գրված լինեին, կար-
ծում եմ, թե նույնիսկ աշխարհը չէր
կարող պարունակել այն գրքերը,
եթե դրանք գրվեին: Ամեն:

«...բայց սրանք
գրվեցին, որ դուք
հավատաք, թե
Հիսուսը Քրիստոսն
է, Աստծո Որդին,
և հավատալով՝
կյանք ունենաք
Նրա անունով»:

ՀՈՎՀԱՆՆԵՍ 20.31

Product Code: ARMJN2

ISBN 978 1 86228 218 6

9 781862 282186

**Trinitarian** Bible Society
**Tyndale House, Dorset Road,**
**London, SW19 3NN, England**

***email:*** **contact@tbsbibles.org**
**www.tbsbibles.org**

